1916 № 32.—Օգոստոսի 7 ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ — ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ — 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ տարեկան 4** *րուբլի,* **կէս տարուան 2** *ր.* **50** *կ.*, *Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների հասարակական հիմնարկութեանց համար՝* **տարեկան 3** *ր.*, **կէս տարուան 2** *ր.*, *Արտասահման՝* **տարեկան 5** *ր.*, **կէս տարուան 3** *ր.*

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** *Թիֆլիս, Արտաարադեան հրապար.* № 7. **Հեռախօս № 29.**

*Յատի հասցէն.*—Тифлисъ, „Амбавaберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** *տողին* **10** *կոպ.*

*Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։*

*Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։*

*Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։*

*Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ ԹԵՐԹԻՍ ԿԻՍԱՄԵԱՅ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐԻՆ

*«ՀԱՄԲԱՒԱԲԵՐԻ» խմբագրութիւնը խնդրում է կէս տարուայ բաժանորդներից՝ շուտով վերանորոգել բաժանորդագրութիւնը, այլապէս «Համբաւաբեր»-ի առաքումը կը դադարեցնենք յուլիսի 30-ից։*

## Համաշխարհային պատերազմը

### ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

*Կովկասեան ճակատի վրայ վերջին երկու շաբթուայ ընթացքում պատերազմական գործողութիւններն անսպասելի ընթացք են առել։ Գրեթէ ամբողջ ճակատում թիւրքերը բաւական զօրք կենդրոնացնելով՝ յարձակումներ են սկսել ռուսների դէմ։*

*Այս գծի վրայ թշնամու առաջխաղացումն, ինչպէս երևում է, յաջողել են ռուսները կանգնեցնել։ Վանայ լճի հիւսիս-արևմտեան ափին, Դաղուանի մօտ, ռուսները մինչև անգամ հակայարձակման են դիմել և որոշ տարածութիւն յետ մղել թիւրքերին։ Նոյն բանը տեղի է ունեցել և Վանայ լճի հարաւային ափերին, Ոստանի մօտերքը։ Երևի քիչ ժամանակից յետոյ ռուսները օգնական զօրքեր ստանալով կարող կըլինեն զարգացնել իրենց հակայարձակումները և թշնամուց նորից խլել կորցրած գիրքերը։*

*Հիւսիսային գծերից թիւրքերը միայն Գիւմիւշխանէի մօտ են կենդանութիւն ցոյց տալիս։ Նրանք անընդհատ յարձակւում են այդտեղ ռուսների վրայ և միշտ կորուստներով յետ մղւում։*

*Պ ա ր ս կ ա կ ա ն ճ ա կ ա տ ո ւ մ էլ թիւրքերը խիստ եռանդուն գործողութիւնների են դիմել թէ Բաղդադի և թէ Մոսուլի ճանապարհների վրայ։ Առանձնապէս աչքի է ընկնում տաճկական առաջխաղացութիւնը առաջին ուղղութեամբ։ Քիրմանշահին և Համադանին տիրելուց յետոյ՝ թիւրքերը անընդհատ առաջ են շարժւում դէպի հիւսիս։ Նրանց առաջխաղացութիւնն այստեղ դեռ լուրջ արգելքների չէ հանդիպել։ Մուսուլի ուղղութեամբ կռիւներ են տեղի ունենում թէ Ռևանդուզի և թէ Սուջբուլաղի գծերով։ Այստեղ ռուսները, թէև ոչ առանց դժուարութեան, կտրում են թիւրք գնդերի ուժերի առաջը։ Սուջբուլաղից հարաւ նրանք մինչև անգամ մի քանի տեղ հակայարձակումների են անցել և թիւրքերին յետ քշել։ Այս եռանդուն գործողութիւններով թիւրքերն ըստ երևոյթին նպատակ են դրել մաքրել Պարսկաստանը*

ռուսներից, տապալել Թեհրանի անգլ-ռուսասէր կառավարութիւնը և Պարսկաստանի ռազմիկ ցեղերը ոտքի հանել դաշնակիցների դէմ։

Եգիպտական ճակատում ևս երկարատև դադարից յետոյ խոշոր ռազմական գործողութիւններ տեղի ունեցան։ Յուլիսի վերջերին անգլիացիք յարձակուելով Հօղելքիշէի և Բիրէլաբայի շրջանում գործող թիւրքական զօրքերի վրայ՝ ահագին ջարդ են տուել նրանց։ Թշնամու կորուստները 6—7 հազարի են հասնում։ Անգլիացիք գերել են 3,534 ասկեար և խլել 4 թնդանօթ, 8 գնդացիր և բաւական քանակութեամբ այլ ռազմամթերք։ Այսպիսով Թիւրքերի յոխորտանքը՝ գրաւել Սուէզի ջրանցքը և Անգլիայի ծովային հաղորդակցութիւններին հարուած հասցնել—այս անգամ ևս վիժեց։ Թշնամին 50 մղոնից աւելի հեռու հալածուած է ջրանցքից։

## ԱՒՍՏՐՕ-ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Ռուսական ճակատում վերջին օրերս համեմատական հանգիստ է տիրում։ Համեմատական ենք ասում, որովհետև ռուսների առաջխաղացութիւնը դարձեալ շարունակւում է, թէև ոչ նախկին թափով։ Թշնամին առաջին ծանր հարուածներից փոքր ինչ կազդուրուած՝ կատաղի դիմադրութիւն է ցոյց տալիս ռուսներին բոլոր գծերի վրայ և այդ պատճառով էլ մեծաքանակ գերիների լուրեր չեն հասնում մեզ այլևս։

Ռուսաց յաջողութիւններն ընդհանուր առմամբ հետևեալ պատկերն ունին. Դնեստրից հարաւ նրանք գրաւել են Տիսմենից, Նադվորնիա և Ստանիսլաւով քաղաքները, իսկ դրանցից էլ հարաւ հասել են մինչև Պրուտի ակունքները։ Դնեստրից հիւսիս նրանք Կորոպեց գետի վրայ կատաղի կռիւ մղելուց յետոյ՝ յետ են մղել թշնամուն մինչև Զլատայա Լիպա գետի այն ափը և գրաւել Մարիամպոլ քաղաքը։ Ստրիպայի վրայ ամրացած աւստրիական զօրքն էլ քաշուել է դէպի Զլատայա Լիպայի միւս ափը։ Մօտիկ ապագայում կռիւներ են նախատեսնւում Գալիչի մօտ, որից ռուսները ընդամենը 10 վերստ հեռու են գտնւում։ Եթէ այդ բաւական ամրացրած բերդաքաղաքն էլ ռուսների ձեռքն անցաւ՝ նրանց համար Լվովի ճանապարհը հարաւից կը բացուի և այդպիսով այդ քաղաքը կվտանգուի ոչ միայն արևելքից կամ Բրոդի կողմից, այլ և հարաւից։

Այս ահագին առաջխաղացութեան հետ միասին ռուսները ձեռք են ձգել ահագին քանակութեամբ գերի և պատերազմական աւար։ Ըստ վերջին պաշտօնական հաղորդագրութեան, ռուսները մայիսի 22-ից մինչև յուլիսի 30-ը գերել են 7,757 սպայ և 350,845 զինուոր։ Եթէ այս թուի վրայ ընդունուած հաշուով աւելացնենք սպանուածներ, վիրաւորներ ու փախստականներ՝ կստանանք, որ Աւստրօհունգարիան մօտ երկու ամսուայ մէջ 6—7 հարիւր հազար մարդու կորուստ է ունեցել։ Բացի այդ՝ վերոյիշեալ ժամանակամիջոցում ռուսները խլել են թշնամուց 405 թնդանօթ, 1,326 գնդացիր, 338 ռմբաձիգ ու ականաձիգ գործիքներ և ահագին քանակութեամբ այլ տեսակի պատերազմական աւար։

Աւստրիայի այս ծանր հարուածներին դարման անելու համար Թիւրքերն ու բուլղարները, ինչպէս լրագիրներն են յամառօրէն պնդում, մի քանի զօրաբաժին (դիւիզիա) օգնական զօրք են ղրկել։ Բացի այդ՝ աւստրիացոց զօրքի մի քանի հրամանատարներին փոխել են, իսկ Բրոդից հիւսիս գտնուած զօրքերի հրամանատարութիւնն էլ յանձնել Հինդենբուրգին։ Սակայն Աւստրօհունգարիայի ստացած վէրքերն այնքան խորն են, որ հազիւ թէ նման կիսամիջոցներով բուժուեն։

Ռուսական ճակատի հիւսիսային գծերում կատարեալ հանգիստ է տիրում։

Անգլօ-Ֆրանսական ճակատում Սոմի մեծ ճակատամարտից յետոյ, երբ դաշնակիցները գրաւեցին մօտ 50 քառակուսի քիլոմետր ամրացած տարածութիւն և գերեցին մի քանի տասնեակ հազար մարդ՝ պատերազմական գործողութիւններն ընթանում են դրեթէ միշտ դաշնակիցների յաջողութեամբ։ Անգլիացիք Պոզիէրից հիւսիս, իսկ Ֆրանսացիք Մորեպի մօտ մի քանի անգամ պատռել են թշնամու շղթան, նոր ամրութիւններ տիրել և նոր մարդիկ գերել։ Նոյն յաջողութեամբ մի քանի ուշագրաւ գործողութիւններ կատարել են Ֆրանսացիք և Վէրդէնի տակ։ Գերմանացիք ինչպէս ռուսական ճակատում, նոյնպէս և այս ճակատում պաշտպանողական դրութիւնից դուրս չեն գալիս։ Ամենաշատը նրանք հակայարձակումներով աշխատում են այս կամ այն գծի վրայ իրենցից խլած խրամատները վերստին ձեռք ձգել։ Գերմանիայի զինուորական ուժի նուազման ամենապերճախօս ապացոյցը այս ռազմական համեստութիւնն է։

Իտալական ճակատում Իզոնցոյի մեծ կռուից յետոյ, երբ իտալացիք գրաւեցին Գէօրց (Գորիցա) քաղաքը և գերեցին մօտ 6,000 մարդ՝ իտալացիների առաջխաղացութիւնը դէպի Կարսօ շարունակւում է։ Նրանք ամեն օր նորանոր ամրութիւններ են խլում թշնամուց և հարիւրաւոր մարդիկ գերում։ Եթէ պատերազմական գործողութիւններն այս կարգով առաջ ընթանան՝ շատ ժամանակ չի հարկաւորուի հասնելու համար Տրիէստին, որ իտալացու ազգային բաղձանքների անմիջական առարկան է հանդիսանում։

—

Ընդհանրապէս նկատւում է, որ դաշնակիցները երկու տարուայ փորձից յետոյ համոզուելով, որ թշնամուն կարելի է յաղթահարել միայն միահամուռ գործողութիւններով՝ բոլոր ճակատների վրայ էլ նեղում են գերմանականութեան։ Կռուի այս նոր եղանակը տռանձնապէս ծանր է գալիս Գերմանիային, որի անցեալ յաջողութիւնները մեծապէս պայմանաւորուած էին այնու, որ նա միշտ մի ճակատի վրայ կռուելով՝ կարողանում էր, շնորհիւ իր հաղորդակցութեան միջոցների առատութեան, կռուի վայրում գերազանց ուժեր կենդրոնացնել։ Ներկայումս այս բանն այլ ևս հնարաւոր չէ, ուստի և գերմանացիք ոչ մի տեղ վճռական գործողութիւնների չեն անցնում, իսկ դաշնակիցների սկսած գործողութիւնները մեծ մասամբ յաջողութեամբ են պսակւում։

* *

---

## ԺՈՖՖՐԻ ԿԱՐԾԻՔԸ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ

Ժոֆֆրը հիւսիս-ամերիկական լրագրերի գործակալութեան ներկայացուցչին յայտնել է հետևեալը.

«Թէև մեր թշնամիները այժմ կռւում են մեծ կատաղութեամբ, քան երբևիցէ, բայց աշխարհը կարող է տեսնել, որ դաշնակիցների գործունէութեան միացումը կատարուած իրողութիւն է, և պարզ տեսնել, որ բաղդը թեքւում է յօգուտ մեր վերջնական յաղթանակի։ Ներկայ արշաւանքի բնորոշ գիծը հանդիսանում է հենց այդ միացումը գործողութիւնների բոլոր զօրաճակատների վրայ, որ հնարաւորութիւն է տալիս հետզհետէ նեղել թշնամուն ամենուրեք։ Պատերազմի սկզբում ֆրանսացիների տուած զոհերը թոյլ տուին դաշնակիցներին պատրաստել գործողութիւնների այդ միութիւնը, և այժմ ես հպարտ եմ, որ հրապարակաւ կարող եմ յայտնել, թէ ինչպէս մեր դաշնակիցները կատարեցին իրանց պարտականութիւնը։ Ռուսաստանը,—օգտուելով ժամանակից, որը մենք կարողացանք տալ նրան, որովհետև մենք պատրաստ էինք առաջինը,—կրկնապատկեց իր ույժերը թէ մարդկանցով և թէ նիւթով մինչև այն ժամանակ, երբ նորերս Գալիցիայում պսակեց իրան յաղթութիւններով։ Նոյն ժամանակամիջոցը Անգլիային հնար տուեց կազմակերպել իր բոլոր ույժերի հաւաքումը, որոնց ռազմական արժէքը այժմ հաստատուեց Սոմմի վրայ։ Մենք միանգամայն հաստատ գիտենք, որ մեր թշնամիները թէև կռւում են մեծ եռանդով, քան երբևիցէ, բայց և այնպէս արդէն հասել են այն դրութեան, որ սպառում են իրանց վերջին պաշարը՝ մարդկանց և նիւթ։

«Ես չեմ կարող ասել, թէ երբ կը ճեղքուի գերմանացոց զօրաճակատը, բայց անշուշտ պէտք է ճեղքուի։

«Ֆրանսացիների հինգամսեայ դիմադրութիւնը Վերդէնի մօտ բոլորովին յեղաշրջեց գերմանական սպայակոյտի ծրագիրը, և այժմ մենք ուղղակի և արագ գնում ենք դէպի յաղթութիւն։ Սակայն չը պէտք է մտածել, որ արևմտեան զօրաճակատում թշնամու ոյժերը թուլացել են որոշ չափով։ Գերմանացոց լաւագոյն ոյժերի 2/3-ը տակաւին գտնւում է արևմտեան զօրաճակատում։ Անգլիացիները և ֆրանսացիք իրանց դէմ ունեն գերմանացոց 122 լաւագոյն (դիվիզիաներ) զօրաբաժանմունք։

«Ինչ վերաբերում է ֆրանսացոց զօրքի ոգուն և տրամադրութեանը, մենք այդ մասին աւելի լաւ կարող ենք դատել։

«Ես կարող եմ աւելացնել, որ մեր զօրքը թուականօրէն էլ աւելի ուժեղ է զօրաճակատում, քան պատերազմի սկզբում»։

Ժոֆֆրը վերջացրել է իւր խօսքն այսպէս.

—Դաշնակիցները կռւում են ոչ միայն իրանց շահերի, այլ և աշխարհի ազատութեան համար, և նրանք զէնքը վայր չեն դնի, մինչև որ ազատութիւնը ապահովւած չը լինի վերջնականապէս։

# Ներքին տեսութիւն

## ՊԱՇՏՊԱՆԵՆՔ ՀԱՅ ԿՈՒԼՏՈՒՐԱՆ

Հայ մամուլի մէջ ծեծւում է մի շատ կարևոր և ցաւոտ խնդիր, թէ ինչպէս պէտք է պահպանենք մեր ազգային վտանգւած լեզուն ու գրականութիւնը և տարածենք օտարախօս հայերու մէջ։ Այս խնդիրը այնքան ժամանակակից է ու այնքան հրատապ նշանակութիւն ունի, որ կարժէ հայ մտաւորականութեան հեղինակաւոր մասը անդրադառնայ այդ մասին, միջոցներ ու դարմաններ առաջարկէ, մինչև որ հարցը բանաւոր ու գործնական եզրակացութեան ու լուծման յանգի և ոչ թէ—Հայ մամուլի ընդհանուր սովորութեան համաձայն—ցատկոտէ խնդիրէ-խնդիր և այդպիսով բոլոր հարցերն ու առաջարկութիւններն էլ մնան օդէն առկախ, անիրագործելի։

Կովկասահայ ժողովուրդի կուլտուրական պահպանութեան խնդիրը՝ շատ բնական էր որ մեր ցեղի այս ճգնաժամի օրերուն հրապարակ գրուէր, երբ գոյութիւն ունին գաղթականութեան նման կնճռոտ խնդիրներ, երբ սահմանէն անդին մեր եղբայրակիցներն նահատակւում են թիւրքական գազանութեան վայրագ ճիրաններում։

Բնական է՝ որովհետև դժբաղդութեան և ճգնաժամի ժամանակն է, որ որևէ ժողովուրդը քննադատօրէն մտենալով իր սեփական գործունէութեան ու արժէքներուն, անողոքօրէն վերլուծում է և թերութիւնները պատկերացնելով դարմաններ ու սպեղանիներ է առաջարկում։

Ապազգայնացման խիստ վտանգն երևան բերելով, ոչ պէտք է այնպիսի ծանր և անիրագործելի դարմաններ առաջարկել, որ խրուենք մէջը ու չըկարողանանք ելնել ու ոչ էլ վէրքին ու ցաւին սաստկութեանը նայելով՝ յուսահատութեամբ բռնուենք և արտասուողի շապիկը հագնենք միայն։ Հարկաւոր է փորփրել վէրքը, բազմակողմանի ու խնամոտ կերպով ուսումնասիրել և ըստ այնմ իրագործելի ու բուժիչ դարմաններ հրամցնել։

Հայերէն լեզուն ու գրականութիւնը աւելի ընդարձակ ծաւալով հայ ժողովուրդի, մանաւանդ օտարախօս կենտրոններու մէջ տարածելու համար, հետևեալ դիւրամատչելի միջոցներն ենք առաջարկում, որոնք անհրաժեշտ է որ հենց վերսկսուող դպրոցական շրջանին սկիզբէն իսկ իրագործուէին ու կիրառուէին։

Ինչպէս յայտնի է, հայերէնը բարդ լեզու է և դժուար՝ ռուսերէնի նման՝ թէ իւր քերականական մանուածապատ կանոններով և թէ իւր ուղղագրութեամբ. հետևաբար պէտք է աւելի ժամանակ և աշխատանք յատկացնել, որպէսզի կարելի լինի աւելի արմատական և հիմնական կերպով պատուաստելու և դրոշմելու մանուկներու ուղեղին վրայ, մանաւանդ օտարախօս մանուկներու, որոնց մայրենի լեզուն հայերէնը չէ և որոնք տարրական դպրոցը վերջացնելէ յետոյ էլ պատեհութիւն չունին հայ դըպրոցի երեսը տեսնելու. հետևաբար պիտի գոհանան իրենց ստացած դաստիարակութեամբ, իսկ եթէ այդ հայկական-տարրական դաստիարակութիւնը լաւ քանդակուած է տղու մտքի վրայ, նա կաշխատի դիմադրել արտաքին օտարացնող ազդեցութիւններուն, իսկ եթէ խարխուլ ու վայրիվերոյ է տոհմային այդ դաստիարակութիւնը՝ նա փետրաթափ հաւի նման մի քանի թոյլ ցնցումներէ յետոյ տեղի կը տայ, կ'ընկնի...

Ուրեմն հայոց լեզուին ու գրականութեան կրկնակի ժամանակ ու աշխատանք պէտք է յատկացնել, քան որ յատկացուած է մեր տարրական դպրոցներու համար պատրաստուած ծրագրով։ Շատ քիչ տեղ և ժամանակ տրուած է նաև հայոց պատմութեան, որու միջոցով աշակերտները կը թափանցեն հայ ցեղի անցեալի և ներկայի անցուդարձերուն ու հոգեբանութեանը։ Իսկ Հայաստանի աշխարհագրութիւն գրեթէ չըկայ ծրագրի մէջ...։

Կայ միայն Հայրենագիտութիւն կոչուած առարկայ, որու միջոցով աշակերտը կը ծանօթանայ իւր ծննդավայրի ու Կովկասի հետ։ Այնպէս որ Խրիմի կամ Գորուայ մէջ սովորող հայ պատանին Հայրենիք ըսելով հասկանում է Խրիմը կամ Գորին, որովհետև ծրագրի մէջ հայրենիքի և ծննդավայրի մասին սխալ հասկացողութիւն կայ և եթէ բարեխիղճ ուսուցիչը խնդիրը չը բացատրի, այդ թիւր ըմբռնումը կը շարունակուի մինչև վերջը։

Մինչդեռ ռուսերէնէն բացի՝ միւս առարկաներուն համեմատաբար աւելի լայն և ընդարձակ տեղ տրուած է ծրագրին մէջ։

Անա թէ ինչու տարրական դպրոցէն դուրս եկող աշակերտը հազիւ թոթովում է հայոց լեզուով և հազիւ մէկ երկու բան գիտէ հայոց պատմութիւնէն ու գրականութիւնէն։

Զարմանալի է որ Ռուսահայ մանկավարժներն ու ուսուցիչները այս խիստ կարևոր կէտը աչքաթող են ըրած մինչև այսօր և այդպիսով մեծ չափով կորսնցուցած են այն պատեհութիւնը, որու միջոցով աւելի ուժգին ու աւելի խնամքով հայկական ոգին ու կուլտուրան կարելի էր տարածել ու արմատացնել։

Կայ նաև ուրիշ մէկ կար'որ դարման։

Մեր գաւառական կեդրոններու և մանաւանդ օտարախօս վայրերու մէջ հայ գրքի մեծ սով կայ. և որովհետև մեր լաւագոյն բանաստեղծներու և գրողներու գրուածքները պակասում են, այդ պատճառով նոր սերունդի մէջ ախտի պէս տարածուած է այն տխմար կարծիքը, թէ մենք հարուստ գրականութիւն չունինք։ Մինչդեռ փորձով ապացուցուած է, որ եթէ մի քանի հեղինակութիւնները մեր լաւագոյն գրողներէն տարածուին գաւառի նոր-սերնդի մէջ, այդ կարծիքը հիմնովին պիտի փոխուի և հայ գրականութեան ու արուեստին արժէքը անհամեմատ չափերով պիտի բարձրանայ։

Եթէ մէկ ոսկին Հայաստանի մէջ մէկ հայ կարող է ազատել, ասդին օտարացած վայրերու մէջ մէկ լաւագոյն հայերէն գիրքը հարիւրաւոր հոգիները կարող է փրկել ապազգայնացման վտանգէն ու սրտերը թրթռացնել ազգային զգացումով ու մտայնութեամբ։

Այդ տեսակէտէն մեր հարևան վրացիները աւելի բաղդաւոր են քան մենք. մտէք նրանց գաւառական իւրաքանչիւր օջախը, դուք սեղանի վրայ կը հանդիպէք վրացի բանաստեղծներու լաւագոյն երկերին։

Մեր կուլտուրական ընկերութիւնները պէտք է այդ ուղղութեամբ շատ մեծ աշխատանք թափեն, աժան գներով հայերէն գրքերը տարածեն հայկական հեռաւոր գաղթավայրերու մէջ, ինչ որ մէկ կողմէն հայկական կուլտուրային ու հայախօսութեան և միւս կողմէն հայերէն գրքերու տարածման կարող է նպաստել։

Ահա ձեզ հեշտ, դիւրին եւ անհրաժեշտ քայլերը ու դարմանները մեր աղճատուած կուլտուրան պահպանելու եւ զարգացնելու համար։

Մեր նախնիքը հուրի ու սուրի, տառապանքի եւ արիւնի ծովին մէջէն պահպաներ է իր հոգեկան գեղեցկագոյն ստեղծագործութիւնները եւ ուռճացնելով ու զարգացնելով աւանդել է մեզ։

Մենք ես պէտք է ճիգ թափենք պահպանել այդ թանկագին ժառանգութիւնը ու մեր արեան ու զոհողութեան գնով աւանդենք գալիք նոր սերունդին։

(Շարունակութիւնը հետեւեալով)

Ծ. Թորգոմեան

---

# ԽՆՈՒՍ—ՄՈՒՇ

## (Տեղեկագիր)

Հայ. կենտր. Կոմիտէի լիազօր Գր. Դամարեանը, որ մարտի վերջերին ուղեւորուել էր Խնուս—Մուշ, ուղարկել է՝ մի ընդարձակ զեկուցումն, որից քաղում ենք հետեւեալը.

Մինչեւ յուլիսի սկզբները Խնուսի սննդատու կայանը տուել է 4707 բաժին կերակուր, 421 հոգու առաւօտ-երեկոյ մէկ մէկ հատ հաց եւ ճաշին կերակուր։

Արոսում տուել ենք 2096 բաժին կերակուր եւ թէյ, 1594 բաժին կերակուր, 1158 հոգու թէյ եւ մէկական հաց եւ 2321 հոգու ճանապարհի պաշար։

Գիւմ-Գիւմում կերակրել ենք որբերին, գաղթականներին, տեղացիներին, 2 անգամ շաքար տուել եւ որբերին ոտքից գլուխ հագցրել։

Մուշի ժողովրդի գաղթի տխուր հեռանկարը մեզ հանգիստ չէր տալիս. մենք ամբողջովին զբաղուած էինք գաղթականներին ճանապարհին հացով ապահովելու խնդրով։

Քաղաքների Միութիւնը իր վրայ էր վերցրել Զարբորեսում եւ Ղարաչոբանում սննդատու կայաններ բանալու հոգսը, մեր վրայ էր ընկնում Արոսի կայանում պաշար հաւաքելը եւ Նազիում ու Դութախում կայաններ բանալը։

Մեր կողմից պ. Միս. Դարմանեանը 2 օգնականով եւ Քաղաքների Միութեան կողմից պ. Քրմոյեանը 2 օգնականով արդէն անցել էին Ղարաչոբան, կանոնաւորելու Ղարաչոբանի Ք. Մ. կայանն ու անցնելու Նազի, Դութախ եւ Մանազկերտ, երբ Մուշից ուղարկուած որբերի ուղեկիցներն ու գաղթականները յայտնեցին, որ Մուշի գաղթականութեան մեծ մասը, Խնուսում հաց չճարելու պատճառով, անցնելու է Մանազկերտի ճանապարհով*)։ Անմիջապէս կարգադրուեց Ք. Միութեան եւ մեր փոխադրութիւնը (տրանսպորտը) հասցնել Մանազկերտ կարճ ճանապարհով։ Միացեալ տրանսպորտին միանում են եւ Ղարաչոբանում գտնուած Մշեցի գաղթականները, որոնք ճանապարհին քրդերի կողմից յարձակման են ենթարկւում։ Շնորհիւ պ. Միս. Դարմանեանի ձեռք առած նախազգուշութեան միջոցների միայն Շէրվանշեխցի մի հայ է սպանւում։ Սպանւում է պ. Միս. Դարմանեանի անձնական եւ Ք. Մ-թեան մէկ ձին եւ բեռները (տրանսպորտը) թալանւում են։

Այս տխուր դէպքը մի քանի օրով ուշացրեց Դութախի կայանի բացումը։ Դութախի կայանը բացուեց յունիսի 8-ին, որի համար յուլիսի սկզբներին արդէն ունէինք 1,200 կոտ ցորեն։ Դութախի կայանը հացով ապահովուած կարելի է համարել։

Ինչպէս յիշեցինք, մեր փոքր ոյժերով չկարողացանք իր տնտեսութիւնը վերականգնելու ձգտող Խնուսի ժողովրդի գերմարդկային ճիգերին օժանդակել։ Այս շրջանի ժողովուրդի արնաքամ մնացածները ազատուելով, զանազան տեղերից եկել հասել են իրենց գիւղերը եւ զարմանալի տոկունութեամբ շարունակուող վտանգը ոչինչ համարելով կարողացել են հայրենական օջախը վառ պահել։ Ճիշտ է, այս տարի ժողովուրդն անկարող եղաւ լայն տնտեսութեան ձեռք զարկել։ Հին, շէն գիւղերի նմանութիւն չեն տալիս նորերը, փոքր են գիւղերը, շատ փոքր, արիւնաքամ, տխուր, բայց եւ այնպէս գիւղեր են։ Եւ այս գիւղերն իրենց լաւ ու վատ կողմերով յիշեցնում են հին հայկական շէն գիւղերը։

Ահա ձեզ արնաքամ գիւղերի տնտեսական պատկերը.

| Գիւղերի անունները | Տան թիւը | Անձ | Տղամարդ | Կին | Երեխայ | Ցանքը | Տաւար | Ձի | Էշ | Ոչխար |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| Խնուս-Բերդ. ք. | 78 | 417 | 61 | 155 | 201 | — | 96 | 16 | 21 | 54 |
| Սայլու | 13 | 50 | 11 | 13 | 26 | 43 | 21 | 7 | 1 | 30 |
| Արոս | 33 | 139 | 37 | 39 | 63 | 47 | 80 | 6 | 3 | 11 |
| Մժնկերտ | 11 | 45 | 11 | 13 | 21 | 23 | 37 | 6 | 1 | 43 |
| Քաղկիկ | 8 | 47 | 12 | 14 | 21 | 17 | 22 | 3 | 4 | — |
| Էլպիս | 15 | 79 | 17 | 25 | 37 | 23 | 51 | 6 | 5 | 10 |
| Հարամիկ | 8 | 26 | 9 | 12 | 5 | 6 | 12 | 3 | — | — |
| Մարուֆ | 7 | 35 | 11 | 13 | 11 | 16 | 8 | 1 | 2 | 4 |
| Խալ-չաուշ | 51 | 293 | 70 | 77 | 146 | 51 | 110 | 7 | 10 | 62 |
| Ենգիքոյ | 21 | 116 | 23 | 36 | 57 | — | 17 | 2 | 2 | 4 |
| Գասպարի գետ | 13 | 79 | 15 | 21 | 43 | 41 | 13 | — | — | — |
| Զաուրմա | 31 | 142 | 42 | 47 | 53 | 294 | 103 | 9 | 4 | 19 |
| Խաչլու | 27 | 90 | 28 | 28 | 34 | 152 | 68 | 6 | 2 | 22 |
| Խլաթ | 25 | 173 | 44 | 49 | 80 | 409 | 98 | 16 | 11 | 23 |
| Շարատին | 7 | 20 | 8 | 8 | 4 | 21 | 10 | 2 | 2 | 3 |
| Դուման | 5 | 43 | 13 | 11 | 19 | 64 | 21 | 1 | — | 19 |
| Թոփրաղալա | 7 | 50 | 16 | 14 | 20 | — | 8 | — | 1 | — |
| Եօնջալու | 20 | 114 | 24 | 33 | 57 | — | 17 | 1 | 4 | 3 |
| Դատավերան | 49 | 276 | 60 | 83 | 133 | — | 88 | 4 | 7 | 28 |
| Ղարաբուղաղ | 22 | 134 | 42 | 39 | 53 | 25 | 24 | 3 | 16 | — |
| Խարխարուկ | 26 | 98 | 25 | 24 | 49 | 5 | 32 | 4 | 2 | -- |
| Բուռհան | 13 | 74 | 16 | 22 | 36 | 15 | 23 | 3 | — | — |
| Բուռնազ | 11 | 68 | 21 | 23 | 24 | 27 | 29 | 3 | 2 | 4 |
| Գեանդով | 29 | 95 | 39 | 32 | 24 | 8 | 42 | 18 | 6 | 11 |
| Ղարաչոբան | 27 | 123 | 61 | 35 | 27 | 37 | 92 | 23 | 5 | 16 |
| Եա-եա | 5 | 38 | 12 | 12 | 14 | 20 | 20 | 3 | 1 | — |
| Եայի-Գոմեր | 4 | 30 | 9 | 8 | 13 | 40 | 10 | 3 | — | — |
| | 576 | 2894 | 737 | 886 | 1271 | | | | | |

Պակասաւոր է այս տեղեկութիւնները. ժողովուրդը մեզ Կ. Հ. Բարեգործական Ընկերութեան ներկայացուցիչ համարելով առաջնորդուել է իր հաշիւներով։ Բայց եւ այնպէս այս տեղեկութիւնները մեզ շատ բան են տալիս, եթէ աւելացնենք, որ այս տարուայ ցանքսն ուշ սկսուեց եւ երաշտը փչացրեց ամբողջ ցանքսը։

Ժողովրդին լայն չափով օգնութեան պիտի հասնել այս տարի, որ գալ տարուայ հունձից յետոյ կարողանայ առանց դրսի օգնութեան զարգացնել իւր տնտեսութիւնը։ Միջին թուով ամեն մի հոգուն 8 պուդ. ալիւր պիտի տալ, եւ գարնան համար երկրագործական գործիքներ եւ սերմացու հասցնել։

Մեր սակաւ ոյժերով ձեռնարկեցինք եւ կազմեցինք Խնուսի կոտորածի վիճակագրութիւնը։ Ահա ձեզ մեր աշխատանքի հետեւանքը.

*) Ծանօթ. Բարեբախտաբար Մշի խուճապը շուտով հանդարտուեցաւ եւ ժողովուրդը չանցաւ Մուշ-Մանազկերտ վտանգաւոր ճանապարհով։

| Գիւղերի անունները | Քանի տուն | Անձ | Ազատուած | Անյայտ | Սպանուած | Սպանուած, [illegible] | Ծանօթութիւն |
|---|---|---|---|---|---|---|---|
| Խնուս-բերդ. ք. | 271 | 1832 | 404 | 138 | 32 | 1258 | 20 տան հետքը չկայ։ |
| Սայլու | 69 | 579 | 42 | 5 | 2 | 530 | |
| Մժնկերտ | 17 | 114 | 47 | 8 | — | 59 | |
| Արոս | 87 | 692 | 38 | 7 | — | 647 | 4 տան հետքը չկայ։ |
| Ջաուրմա | 94 | 1274 | 122 | 240 | 601 | 311 | 5 տան հետքը չկայ։ |
| Խալ-Ջաուշ | 76 | 921 | 132 | 108 | 26 | 655 | |
| Էլպիս | 24 | 799 | 55 | 20 | 32 | 692 | գերդաստանով է ցուցակ. |
| Գասպարի գիւղ | 12 | 101 | 2 | 1 | 5 | 93 | |
| Ենգիքէօյ | 32 | 467 | 51 | 16 | 5 | 395 | |
| Քաղկիկ | 136 | 903 | 93 | 25 | 12 | 775 | |
| Մարուֆ | 55 | 460 | 98 | 7 | 5 | 350 | |
| Շարադին | 46 | 425 | 29 | 4 | — | 392 | |
| Դուման | 47 | 360 | 36 | 18 | 1 | 305 | |
| Աղջամելիք | 31 | 271 | 37 | 8 | — | 226 | |
| Հարամիկ | 131 | 916 | 101 | 65 | — | 750 | |
| Բունուազ | 66 | 409 | 81 | 1 | 10 | 311 | |
| Գեանդուկ | 151 | 1171 | 100 | 226 | 104 | 741 | |
| Գեարաքէօփրի | 168 | 1177 | 168 | 25 | 16 | 968 | |
| Խըռթ | 45 | 438 | 155 | 110 | — | 173 | |
| Խոզլու | 64 | 910 | 140 | 67 | 98 | 605 | |
| Եա-եա | 22 | 226 | 37 | 30 | — | 159 | |
| Եայի-գոմեր | 7 | 57 | 15 | 12 | — | 30 | |
| Խըրմխայեա | 47 | 425 | 59 | 3 | — | 363 | |
| Ղարաչօրան | 269 | 1924 | 203 | 56 | 45 | 1620 | 2 տուն չի ցուցակագր. |
| | 1967 | 16845 | 2245 | 1200 | 994 | 12406 | |

Չեն ցուցակագրուած Սարօրին, որից ազատուել է Ղազար անունով մէկը միայն (10 տնից) և Կոպալները, որի մօտ 70—80 տոկոսն ազատուած է։

Հայկական կենտր. Կոմիտէի Խնուսի լիազօր՝ Գր. Ղամարեանց։

—

## ՇՏԻՒՐՄԵՐԸ ԱՆՋԱՏ ՀԱՇՏՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ

Հոֆմէյստեր Շտիւրմերը՝ որին այցելեց Մ. Վ. Ջելնօկովը, հետևեալն է յայտնել Մոսկուայի քաղաքագլխին.

Որոշ շրջաններում իմ նշանակումը, որպէս մինիստրների խորհրդի նախագահ, մեկնւում է ինչպէս անջատ հաշտութեան հնարաւորութիւն։ Ես արդէն վճռականօրէն յայտնել եմ և նորից կրկնում եմ, որ արտաքին գործերի մինիստրի փոփոխութիւնը ոչ մի նշանակութիւն չը պիտի ունենայ այն դիրքի վրայ, որը պահպանում էր Ռուսաստանը դաշնակից պետութիւնների վերաբերմամբ։ Ես կասեմ աւելի.

—Ռուսաստանը կը գնայ աւելի հեռու, նա կը կատարէ այն բոլորը՝ ինչ որ նպատակ է դրել Անգլիան Գերմանիայի դէմ։

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

Մոզդոկից հեռագրում են, որ այնտեղ երկարատև հիւանդութիւնից յետոյ վախճանուել է Կ. Հ. Բ. Ը-թեան խորհրդի անդամ Սարգիս Դաւթեան Մելքումեանցը, որը կտակել է յօգուտ Ընկերութեան 5,000 ռուբլի։ Հանգուցեալը 1908 թուից ի վեր եղել է Խորհրդի բազմաշխատ անդամներից մէկը, վարելով գլխաւորապէս ընկերութեան դպրոցական և ելեմտական մասը։

Իբրև հասարակական գործիչ սա Յովհաննեան օր. դպրոցի հոգաբարձու էր ու Թիֆլիսի Երկրորդ Փոխատու Վարկի ընկերութեան վերատեսուչ (директоръ)։

***

Մելիտոպոլցի հանգուցեալ Եգոր Կարամուրզաեւ կտակելով թողել էր յօգուտ Կ. Հ. Բ. Ը-թեան 10,000 ռ.։ Այդ կտակը հաստատուած է ի գործադրութիւն Սիմֆերոպոլի շրջանային դատարանի 1914 թ. նոյեմբերի 11-ի վճռով յօգուտ Ընկերութեան։ Չնայած այդ հանգամանքին, Խորհուրդս կտակած գումարը տակաւին չէր ստացել ինչ ինչ պատճառներով, որի համար հաւատարմագիր տալով Մելիտոպոլի իրաւաբան պ. Իվան Եգորովիչ Ջերնիկովին՝ խնդրել էր հետևել այդ գործին և ստանալ Ընկերութեանը կտակուած գումարը։ Յարգելի պարոնը իւր սրտին մօտ ընդունելով այդ գործը՝ ամենաջերմ մասնակցութիւն ցոյց տուաւ գործին և առանց վարձատրութեան ակնկալութեան յաջողեցրեց ստանալու վերոյիշեալ կտակած գումարից 7,500 ռ., որպիսի գումարը իւր՝ 21-յուլիսի գրութեամբ փոխադրել է Ընկերութեանս հասցէին։ Պարոնը խոստանում է մնացորդ գումարն եւս շուտով ստանալու ու փոխադրելու։ Պարոնի այդպիսի սիրալիր վերաբերմունքի համար դէպի ազգօգուտ մի գործ, Խորհուրդս յայտնել է գրաւոր իւր ջերմ շնորհակալութիւնը։

***

Կ. Հ. Բար. Ընկ. ստացել է Կարմիր Խաչի ընկերութիւնից հիւանդանոցի յունիս ամսուայ ծախքը 2157 ռ. 81 կոպ.։

## ՃԻՒՂԵՐ

Ախալցխա, 9 յունիսի.—Կ.Հ.Բ. Ը-թեան Ախալցխայի ճիւղի նոր բացուած որբանոցի օգտին առ այժմ ստացուել են նուէրներ թէ դրամական և թէ իրեղէններ հետևեալ անձերից.

Կար. Մարուքեանից—25 ռ., Ման. Մովսիսեանից—25 ռ., Սմ. Սապոնճեանից և տիկ. Եղիսաբեթ Դաւթեանից 25-ական ռ., ի յիշատակ իրանց նոր հանգուցեալ հօր՝ Ս. Սապոնճեանի, Սարգիս և Նշան Սապոնճեաններից 28 ռ., տիկ. Դաւրանեանից՝ 9 ռ., Բորժոմի հասարակութիւնից—Եւդ. Փոլադովայից՝ 15 ռ., Տիտեւվայից՝ 1 ռ. 50 կ., Յակ. Քէշիշեանից՝ 1 ռ., մի թուրք կառապանից՝ 2 ռ., մի հայ զինուորից՝ 50 կ., կնոջից՝ 1 ռ. միւսից՝ 50 կ.։ Դրամ ընդամենը 148 ռ. 50 կ.։ Քաղաքիս հայ կանանց Բ. Ընկ-ից՝ 34 որբերի վերնաշորեր պ. պ. Բաղոյեանից, Բայբուրտցեանից, Գաբոյեանից որբանոցի հարկաւոր իրեղէններ, արհեստաւոր Սեդրակ Սվախճեանից՝ շորեր և առաջին օրը բոլոր որբերին իւր միջոցով բաղնիք ուղարկեց, Անանիկ Տէր-Անանիկեանից մի թոփ մառլա, դեղատան Արազով ձրի դեղեր մատակարարելու և այլն և այլն, որոնց Որբախնամ Մասնախումբս յայտնում է իւր շնորհակալութիւնը։

Յայտնում ենք նոյնպէս շնորհակալութիւն տեղացի երիտասարդ բժիշկ՝ Մկրտիչ Վանցեանին ձրիաբար և ամբողջ օրերով որբերին քննելու, բժշկելու համար։

Մասնախումբս հասարակութեան այս սրտալի ու պարտաճանաչ վերաբերմունքից հաւատացած է, որ շնորհիւ նոցա այդ լայն աջակցութեան, ինքը կարող է օրինակելի կերպով տանել այդ հարիւր անմեղ մանուկների խնամարկութեան գործը։

Ախալցխայի Որբախնամ Մասնախմբի Նախագահ՝ Խ. Թէխմիշճեան

## ԽՈՐՀՐԴԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԻՑ

Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհուրդը ամսիս 3 նիստում որոշել է՝

ա) 1916—17 դպրոցական տարուայ ընթացքում տալ նըպաստներ գաւառական 130 դպրոցի, որոնց մանրամասն ցուցա-

կը և նպաստների քանակութիւնը կը տպագրուի «Համբաւաբերի» առաջիկայ համարում։

բ) Լսելով Խորհրդի նախկին անդամ Սարգիս Դաւթեան Մելքումեանցի մահը, յարգեց նրա յիշատակը յոտնկայս և որոշեց ցաւակցութիւն յայտնել նրա ազգականներին և ամսիս 6-ին Ջիգրաշէնի եկեղեցում հոգեհանգիստ կատարել՝ նախապէս այդ մասին յայտարարելով հայ և ռուս թերթերում։

գ) Յայտնել շնորհակալութիւն Մելիտոպոլի բնակիչ Իվան Եգորեան Չերնիկեանցին, որը իւր անդուլ աշխատանքով հանգուց. Եգոր Կարամուրզայեանի 10,000 ռ. կտակած գումարից ստացել է 7,500 ռ. և ներկայացրել Խորհրդին, խոստանալով մնացորդ 2500 ռ. գումարն ևս շուտով ստանալու։

### ՕՐԻՆԱԿԵԼԻ ՆՈՒԻՐԱՏՒՈՒԹԻՒՆ

Ամսիս 3-ին «Համբաւաբեր»ի խմբագրութիւնը մտաւ մի բարեկիրթ երիտասարդ սպայ, 218 բատալիոնի պրապորշչիկ Դիմիտրիյ Միխայիլովիչ Պապովը, որ յայտնեց մեզ, թէ ինքը գտած լինելով քառասուն (40) ռուբլի, նուիրում է հայ փախստական որբերի օգտին։ Խմբագրութիւնս շնորհակալութեամբ ընդունելով այդ սրտաբուղխ նուէրը՝ յանձնեց Կ. Հ. Բ. Ը-թեանը գործադրելու համաձայն ազնիւ սպայի ցանկութեան։

### ՀԱՅ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷ

Գ ա ն ձ ա կ ի Հայ գաղթականական Յանձնաժողովից ստացուած տպագրուած հաշուից երեւում է, որ 1914 թուի դեկտեմբ. 24-ից մինչև 1916 թ. փետրուարի 6-ը Մ ու տ ք է եղել՝ ներկայացումներից, նուիրատուութիւններից և այլն 11048 ռ. 78 կ., որ և ամբողջապէս գործ է դրուել տաճկահայ փախստականների օգտին։

* * *

Հայկական Կենտրոնական Կոմիտէն շնորհակալութեամբ ստացել է „Кавказское Слово“ թերթի խմբագրութեան միջոցով յօգուտ փախստականների Գ. Ա. Խարազեանից—25 ռուբլի, Ճ. Ն. Անանեանից—25 ռ. և Գորուց հայր Տէր-Մինասեանից—40 ռ., իսկ յօգուտ հայ փախստականների որբերի—20 ռ.։

---

## ՎԵՐՋԻՆ ՀԵՌԱԳՐԵՐ

### ՀԱՅ. ԿԵՆՏՐ. ԿՈՄԻՏԷԻՆ

*Ե ր և ա ն—Խաչիկեանից*

Անհրաժեշտ գտնելով՝ անյապաղ բանում եմ Նախիջևանում պահեստ-խանութ. նահանգապետը նոյնպէս անհրաժեշտ է համարում։

—

*Ի գ դ ի ր—Ազարեանից*

Աչքի առաջ ունենալով սպասուող գաղթը, ֆուրգոնները Վան դատարկ ճանապարհեցի։ Զանազան հիմնարկութիւններ անհրաժեշտ են գտնում գաղթականութեան գալիք ճանապարհին ալիւրի պաշար պատրաստել. կարգադրեցէք՝ ինչպէս վարուել։ Այս հեռագրին պատասխան է տրուած. «Շուտափոյթ հեռագրեցէք մանրամասն, ինչ կայաններում (ПУНКТЪ) են առաջարկում ալիւրի պաշարը պատրաստել, ինչ քանակութեամբ և ում բաց թողնել»։

—

*Ի գ դ ի ր—Կոտանջեանից*

30,000 հոգի յուլիսի 29-ին Վանից Իգդիր են ուղևորուել. անհրաժեշտ է ճանապարհին շուտափոյթ օգնութիւն։ Քանի դեռ Բայազէդում անհնար է բանալ պահեստ. մտադիր եմ դնել ինձ գործող հիմնարկութիւնների տրամադրութեան տակ։ Այս հեռագրին պատասխան է եղել. «Թոյլ ենք տալիս գաղթականութեան կարիքները հոգացող հիմնարկութիւնների հետ միասին գործել»։

—

*Ի գ դ ի ր—Ազարեանից*

Գաղթականները գալիս են Վանից։ Հիմնարկութիւնները պահանջում են կանխիկ վճարով ալիւր, շաքար. հեռագրեցէք՝ բաց թողնե՞մ թէ ոչ։ Հեռագրի պատասխանն է.

«Թոյլատրւում է բոլոր գաղթականութեան կարիքները հոգացող հիմնարկութիւններին կանխիկ վճարով տալ ալիւր և շաքար»։

—

*X—Վահան Փափազեանից*

Վանի շրջանի ամբողջ ազգաբնակութիւնը հեռանում է։

Բաշկալա է ուղարկուած 2,000 պուդ ցորեն, պատասխան չ'կայ, թէ հասե՞լ է տեղ թէ ոչ։ Պահեստում կայ մեծ քանակութեամբ շաքար և ալիւր։ Խնդրում եմ փոխադրելու համար անմիջապէս կարգադրութիւն անել։

—

*Ս ա ր ի ղ ա մ ի շ—Գթութեան քոյր՝ Լալայեանից*

Սարիղամիշում եմ. ո՞ւր տանեմ որբերին, խնդրում եմ շտապով պատասխանէք։

—

*Ք ա ր վ ա ն ս ա ր ա—Տէր Ստեփանեանից*

Հրամանատարը պահանջում է վարակիչ հիւանդների հիւանդանոցի շէնքը իսկոյն դատարկել, այժմ հիւանդներ կան՝ 4 զինուոր և 13 փախստական։ Սպասում ենք ձեր կարգադրութեանը։

—

*Ք ա ր վ ա ն ս ա ր ա—Տէր Մեսրոպից*

Գաղթական ուսուցիչները չեն համաձայնւում 40 ռուբլուց պակաս պաշտօնավարել. տեղափոխեցէք 500 ռ.։ Երեք շաբաթից աւել է տեղական ոստիկանապետը ձըգձգում է գաղթականներին նպաստ տալը։

Համարեա սով է, խնդրում են օգնութիւն։

—

*Դ ի լ ի ջ ա ն—Ս. Յարութիւնեանից*

Որբանոցներում սաստիկ տարածուած են տարափոխիկ հիւանդութիւններ. շուտով ուղարկեցէք երկու գթութեան քոյր և մի կին-ֆելդշեր։

—

*Բ ա թ ո ւ մ—Վարչութիւնից*

Կ. Հ. Բ. Ընկերութեան արտակարգ նիստը ամեն տեսակէտից գտաւ անյարմար տեղիս որբանոցի տեղափոխութիւնը Թիֆլիս։

Այդ հարցը վարչութիւնս մօտիկ ապագայում դընելու է և ընդհանուր ժողովի առաջ, որի հետևանքը մանրամասնօրէն կը յայտնենք նամակով։

—

*Գ ա ն ձ ա—Գեներալ Թամամշեանից*

Դիլիջանի որբանոցի համար կուղարկեմ 230 որբ. այդ մասին հոգ տարէք, տեղ պատրաստեցէք նրանց ընդունելու։

*Մ ե շ ե ա լ ի—Գրիգորեանից։*

Մուշի շրջանի գաղթականներին տեղաւորելու համար Ձեր ներկայացուցիչներին ճանապարհեցէք Եօղան Բաշքէօյ։

Ցանկալի էր ալիւր և շոր հասցնել Բաշքէօյ. կարիքը մեծ է։

—

*Ս ա ր ի ղ ա մ ի շ—Տէր Տաճատից*

Սպասում եմ 240 գաղթականի Մուշից։ Նրանց տեղափոխելու համար մինչև Ալէքսանդրապոլ ունեմ նարեադ. հասան Խնուսցի 90 որբերը, տեղափոխելու համար նարեադ չունեմ, խնդրում եմ որևէ կարգադրութիւն անէք՝ գէթ այսուհետև առանց որև է արգելքի գաղթականներին տեղափոխելու։

—

X—Կարա Սասունից

Դէպի Բաշքէօյ ճանապարհուեցին 10,000-ից աւելի գաղթական և 400 որբ. խնդրում ենք կարգադրեցէք նրանց դիմաւորելու և օգնութիւն ցոյց տալու։

—

X—Կարա Սասունից

Մուշի և Խնուսի ազգաբնակութիւնից 15,000 հոգի ճանապարհում ենք Բասենի գծով. խնդրում եմ որև է կարգադրութիւն անէք նրանց ընդունելու և օգնութիւն ցոյց տալու Տաճկահայաստանի Բասենում։

—

*Վ ա ն—Սահակեանից*

Առայժմ այդտեղից ինձ ոչինչ չուղարկէք, ուղարկած դուքմանները ճանապարհին բռնուած են։ Ուղարկեցէք շուտով ազատ արանսպորտ երեխաներին և մեր գոյքը տեղափոխելու համար։ Մուշից եկողներից ստացուած է տեղեկութիւն, որ այնտեղ Հայկ. Կոմիտէն ձերբակալուած է.

---

## ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԳՈՐԾԸ

Գնուած 200 արկղ լուցկին, որը թողնուած էր Թիֆլիսի Առևտրական Բանկի Բագուի բաժանմունքի պահեստներում Ընկերութեանս տրամադրութեան տակ, կարգադրուած է ուղարկել հետևեալ վայրերը. Ղարաքիլիսա՝ 50 արկղ, Աղէքսանդրապոլ՝ 30, Վաղարշապատ՝ 35, Երևան՝ 25, Իգդիր՝ 35 և Սարիղամիշ 25։

Պապովի ընկերութիւնից 30,000 ֆ. գնուած թէյից 1700 ֆ. ուղարկուած են հետևեալ վայրերը.

Աղէքսանդրապոլ՝ 100 ֆ., Վաղարշապատ՝ 300, Քարվանսարա՝ 100, Դիլիջան՝ 100, Սարիղամիշ՝ 100, Ելենովկա՝ 100, Երևան, 300, Իգդիր՝ 300 և Մեծ-Ղարաքիլիսա՝ 300։

Ստացուած է 3 վագոն շաքար, որ ուղարկուած են հետևեալ վայրերը. Մեծ-Ղարաքիլիսա՝ 1 վագոն, Իգդիր՝ 1 և Ջուղա՝ 1։

Գնուած է 60 պուդ սապոն, որից 30 պ. Մեծ-Ղարաքիլիսա է ուղարկուած և Նոր-Բայազէտ՝ 50-ական պուդ։

Ստացուած է 13 վագոն ալիւր, որոնք ուղարկուած է հետևեալ վայրերը. Աղէքսանդրապոլ՝ 5 վագոն, Իգդիր՝ 2, Վաղարշապատ՝ 2, Ղամարլու՝ 2 և Երևան 2 վագոն։

Յուլիսի 26-ին գեներալ Թամամշեանը յանձնեց Ընկերութեանս 19 դուբլիկատ՝ Գուլկևիչ կայարանից Թիֆլիս ուղարկուած 19 վագոն ալիւրից, որից ստացուած են յարդ 2 վագոն և ուղարկած են Սարիղամիշ։

Ի նկատի առնելով Նախիջևանում պահեստ բանալու անհրաժեշտութիւնը, Ընկերութիւնս վերջերս այստեղ ևս բացեց պահեստ։

---

# Ամենայն Հայոց Կաթող. Թիֆլիսում

---

Ամենայն Հայոց Կաթողիկոսը յուլիսի 28-ին այցելեց Կովկասի Փոխարքային Կոջորի ամարանոցի ապարանքում, Փոխարքայի հրաւէրով և յատուկ տեսակցութիւն ունեցաւ՝ առանձին Փոխարքայի առանձնասենեակում։ Ունկնդրութիւնը, որ տևել է 25 վայրկեան, եղել է յուսադրական և սրտագին, որից Կաթողիկոսը հեռացել է գոհ սրտով։

***

Յուլիսի 28-ին Ամենայն Հայոց Կաթողիկոսին ներկայացաւ Կովկասի Փոխարքայի Դիւանատան տեսուչ Կոլոգրիւովը և յանձնեց Փոխարքայի ինքնագիր մի գրութիւնը, որ պատասխան է Կաթողիկոսի արուած դիմումներին։

***

Յուլիսի 29-ի երեկոյեան ժամը 11-ի գնացքով Էջմիածին մեկնեց Ամենայն Հայոց Կաթողիկոսը իր շքախմբի անդամների հետ։ Կաթողիկոսին ճանապարհ ձգելու համար եկել էին Արքայական սրահը Փոխարքայի քաղաքացիական մասի օգնական իշխ. Օրլովը, Փոխարքայի Դիւանատան տեսուչ Կոլոգրիւովը, զինուորական հաղորդակցութեան կառավարիչ Գեսկերը (որը և ուղեկցեց առանձին վագոնով), Նահանգապետ Մանդրիկան, քաղաքային Վարչութեան անդամ Աթաբէկեանը, ազնուականների պարագլուխ իշխ. Արխազին, ոստիկանապետ Զղանովսկին, հայ հոգևորականութիւնը և ընդունելութեան յանձնաժողովի անդամներն ու մի քանի բարձրաստիճան անձ։

---

# Ք ր ո ն ի կ ո ն

---

Քաղաքի ջրանցքի ջրի հետազօտութիւնից երևում է, որ խոլերայի բացիլներ չունի։

***

Թիֆլիսում ստացուած տեղեկութիւնների համաձայն, Գորիում խոլերայով հիւանդացել են 7 հոգի, որոնցից 6-ը մեռել են։

***

Քաղաքում խոլերայի տարածման առաջն առնելու համար առաջարկուած են մի քանի միջոցներ. ի միջի այլոց որոշուած է քաղաքի 6 հրապարակում բանալ ձրի թէյատներ։

***

Բարձրագոյն հաստատութեամբ Վրաստանի և Իմերէթի թեմի առաջնորդ Մեսրոպ եպիսկոպոսը տեղափոխւում է Աստրախան՝ առաջնորդի պաշտօնով, իսկ այնտեղի առաջնորդ Մխիթար եպիսկոպոսը՝ Թիֆլիս՝ նոյն պաշտօնով։

***

Որոշուած է Թիֆլիսում հիմնել առանձին ոստիկանապետութիւն, որի համար դիմուած է ոստիկանապետ Զղանովսկուն և խնդրուած մի քանի կարևոր տեղեկութիւններ ծայրամասերի բնակիչների քանակի, առևտրական, հասարակական հիմնարկութիւնների և դուարճատեղերի մասին։

***

Յուլիս ամսուայ ընթացքում Կովկ. Հայոց Բարեգործական Ընկերութեան կենտրոնի ընթերցարանն են յաճախել 6,060 հոգի, որոնցից 2,820 կինմարդ և 3240 տղամարդ։ Գրադարանից

տրուած է կարդալու համար 2394 կտոր գիրք, որից հայերէն 1580 և ռուսերէն 814։

***

Փոխարքայի Դիւանատանը ստացած տեղեկութիւնների համաձայն, Կովկասի զանազան վայրերում մթերքները թանգացել են միջին թուով 400 տոկոսով։ Դիւանատունը Կովկասում տիրող թանգութեան մասին տեղեկութիւններ է հաւաքում, որպէսզի ներկայացնի Նախարարութեան։

***

Ֆրանսիացոց զօրավար Պօն Կիսլաւոդսկուց եկել է Թիֆլիս և ներկայացել Կովկասի Փոխարքային։

***

Անդրկովկասի զինուորական հաղորդակցութեան կառավարիչը կարգադրել է, որ Բագուից Փոթի ուղղութեան մարդատար գնացքների կոնդուկտորների պաշտօնին ընդունեն այն կանանց, որոնք պէտք է նախօրօք ծանօթ լինեն իրենց պարտականութիւններին։ Նրանց համար ծրագրուած է յատուկ տարազ։

***

Մինչև ամսիս 2-ը քարշակի (տրամվայի) վարչութիւնը կոնդուկտորի պաշտօնի ընդունել է 60 կին, որոնք արդէն պաշտօնավարում են և ամսական ստանալու են 75-ական ռ. ռոճիկ։

***

Ամսիս 3-ին կայացաւ քաղ. դումայի արտակարգ նիստը, որը զբաղուեց այն խնդրով, թէ ինչ քանակութեամբ միս պէտք է մորթուի քաղաքի ազգաբնակութեան համար վերջին օրէնքի համաձայն։ Ընդսմին պէտք է քննուեն այդ օրէնքի հետ կապ ունեցող մի շարք խնդիրներ։

***

Կիրակի օրը քաղ. վարչութիւնը տեղեկութիւն ստացաւ, որ Գլդանի գիւղում, որը մօտ է քաղաքի ջրանցքի տեղին, պատահել է երեք դէպք կասկածելի խոլերայով հիւանդութեան։ Հիւանդացել են երկու կին և մի տղամարդ։ Սրանցից վերջինը մեռել է։ Այս տեղեկութիւնը իմանալով, քաղ. բժշկա-առողջապահական վերատեսչի պաշտօնակատար բժ. Շ. Ա. Միքելաձէ Գլդանի գիւղը ուղարկեց առողջապահական մի խումբ, գլխաւորութեամբ ախտահանութեան տան կառավարիչ բժ. Խարազեանի։ Դէպքի մասին քաղ. վարչութեան անդամ Մ. Զարարը զեկուց նահանգապետին, խնդրելով աջակցել քաղ. ինքնավարութեան Ներքին-Գլդանի գիւղը առողջապահական դրութեան դնելու։ Իսկոյն գիւղը ուղարկուեցին գաւառական ոստիկանութեան պաշտօնեաներ։ Պարզւում է, որ երեք հիւանդներն էլ մօտ օրերս եղել են Թիֆլիսում և մասնակցել են իրանց ազգականի թաղմանը, որ մահացել էր խոլերայից։

***

Ոստիկանապետը հրաման արձակեց, որով խստիւ կարգադրում է ոստիկանական պաշտօնեաներին, որ սրանք հսկեն, որպէսզի թատրոնների և զւարճատեղերի հանդէսները վերջանան գիշերուայ ժամը 12-ին, և նոյնիսկ մի րոպէով ոչ ուշ։

***

«Кавказское Слово» թերթը ամսիս 2 և 3-ին լոյս չը տեսաւ տպագրողների գործադուլի պատճառով։

---

# Արտաքին տեսութիւն

## ԼԵՀԱԿԱՆ ՀԱՐՑԸ

Սկսած այն օրից, երբ ռուսական առաջխաղացութիւնը Բուկովինայում, Գալիցիայում և Վոլինիայում սկսեց յոյս ներշնչել քաղաքագէտներին, թէ պատերազմական գործողութիւնները կարող են շուտով տեղափոխուել Լեհաստան՝ Լեհական ինքնավարութեան (աւտոնոմիայի) խնդիրը սկսել է լրջօրէն զբաղեցնել եւրոպական դիւանագէտներին։ Լեհերն իրենք, թէ սահմանի այս կողմը և թէ այն կողմը, երբէք չեն դադարել զբաղուելու այդ խնդրով։ Սակայն քանի դեռ աւստրագերմանացիները շատ պինդ էին նստած Լեհաստանում՝ այդ խնդրի մասին ոչ նրանք էին հակամիտութիւն ցոյց տալիս խօսելու և ոչ էլ դաշնակիցները։

Ռուսական ռազմաբեմի անակընկալ գործողութիւններից յետոյ առաջին անգամ գերմանական մամուլն էր, որ վերարծարծեց Լեհական հարցը։ Գերմանացիք ենթադրելով թէ ռուսաց առաջխաղացութիւնը հարաւ-արեւմտեան ռազմագծերից արագօրէն պէտք է տարածուի դէպի հիւսիս՝ ցանկանում էին ապահովել այդ շրջանների լեհ ազգաբնակութեան համակրանքը և խոստումներ էր, որ շռայլում էին նրանց հասցէին։ Սկզբում լրագրերում սկսեցին լուրեր երեւալ, թէ Գերմանիոյ և Աւստրիոյ կառավարութիւնները Լեհաստանի պետական կազմի մասին բանակցութիւններ են վարում, յետոյ՝ թէ Վիլհելմ և Ֆրանց-Յովսէփ կայսրները տեսակցութիւն են ունեցել, իսկ վերջում մինչև անգամ լրագրերում երեւան եկաւ Լեհաստանի պետական կազմի ուրուագիծը։ Ըստ վերջինիս՝ Լեհաստանը պէտք է դառնայ մի ինքնավար պետութիւն, ինչպէս Սաքսոնիան, Բադէնը, Վիւրտեմբերգը և պէտք է նրանց պէս կապուած լինի Գերմանիային դաշնակցական կապերով։ Միակ տարբերութիւնը Լեհաստանի և այս պետութիւնների այն է լինելու, որ լեհերը ժառանգական իշխանական տուն չպէտք է ունենան, այլ պէտք է կառավարուեն կայսրի նշանակուած փոխարքաներով, ինչպէս Էլզաս-Լոտարինգիան։

Այս նախագծի գոյութեան մասին սկզբում խօսում էին շատ յամառութեամբ. շատ թերթեր մինչև անգամ մօտաւոր ճշտութեամբ որոշում էին, թէ երբ և պետական ինչպիսի գործողութեամբ պէտք է յայտարարուի Լեհաստանի ինքնավարութիւնը։ Սակայն ռուսաց առաջխաղացութիւնը հիւսիսային ռազմագծերի վրայ ուշացաւ, և զուգընթացաբար լեհական հարցն էլ պաղեց։ Վերջին օրերս Hamburger Fremdenblatt-ը, որ կիսապաշտօնական թերթի հանգամանք ունի, մինչև անգամ յայտարարեց, թէ քանի որ Լեհաստանի տիրապետութեան խնդիրը դեռ պարզուած չէ, վաղաժամ է նրա ապագայ վարչութեան մասին խօսք բանալ։

Պատերազմական վերջին յաջողութիւնների առաջին օրերից ռուս մամուլն էլ սկսեց խօսել լեհական հարցի մասին։ Լեհերն այստեղ անցեալ տարուայ նահանջի օրերից թէ Պետական Դումայում և թէ կառավարական շրջաններում չէին դադարում իրենց ինքնավարութեան կոնկրէտ ձեւակերպութիւնը պահանջելուց, սակայն Գորեմըկինի նախարարութիւնը շարունակ ձգձգում էր այդ գործը։ Այս ձգձգումը ջղայնացնող ազդեցութիւն էր գործում թէ լեհերի, թէ դաշնակից ժողովրդների և թէ ռուս հասարակութեան որոշ շրջանների վրայ։ Ընդառաջ գնալով Լեհաստանի ինքնավարութիւնը ձեւակերպելու ընդհանուր ցանկութեանը՝ արտաքին գործոց նախարար Սազոնովը մի երեք ամիս առաջ նախարարական խորհրդին ներկայացրեց Լեհաստանի ինքնավարութեան համար մի նախագիծ։ Սակայն նախարարական խորհրդի մէջ այդ ծրագիրն ընդունելութիւն չգտաւ ոչ ըստ էութեան և ոչ ըստ ձեւի։ Ըստ էութեան Շտիւրմերը և իր համախոհները գտնում էին, որ այդ ծրագիրը շատ լայն է, իսկ ըստ ձեւի՝ որ ներկայ ժամանակներում առհասարակ որեւէ կոնկրէտ ծրագրի հրատարակութիւն աննպատեհ է։

Այս վերաբերմունքի հետեւանքը եղաւ Սազոնովի հրաժարականը։ Սակայն այսու խնդիրը չի փակւում։ Մի տարուց աւելի է Պետական Դումայի ամբիոնից կառավարութիւնը խոստացել է Լեհաստանի ինքնավարութեան համար ծրագիր մշակել և դեռ ոչինչ չէ արել. պէտք էր հասարակութեանը հանգստացնելու համար մի բան տալ, և ահա, ինչպէս մայրաքաղաքի թերթերն են հաղորդում, կառավարութիւնը մշակել է այդպիսի մի ծրագիր,

որ շուտով պէտք է յայտարարուի։ Ըստ այդ ծրագրի Լեհաստանը պէտք է մօտաւորապէս նոյն կազմակերպութիւնն ստանայ, ինչ որ Ֆինլեանդիան։ Նա պէտք է ունենայ իր սէյմը՝ տեղական գործերը կարգադրելու իրաւունքով և իր Փոխարքան՝ որ նշանակւում է ռուսաց կայսերի կողմից։ Ինքնավար Լեհաստանի պետական լեզուն պէտք է լինի լեհերէնը, սակայն ռուսաց լեզուն հարկադրաբար պէտք է աւանդուի դպրոցներում։ Պետական պաշտպանութեան, հաղորդակցութեան ճանապարհների, պօստի, մաքսային և մի քանի այլ խնդիրներում Լեհաստանը պէտք է ենթարկուի կենտրոնական կառավարութեան և օրէնսդրական հաստատութիւնների իրաւասութեանը։

Այս ծրագիրն անկասկած շատ աւելի լայն է, քան թէ այն «լայն զեմստուոն», որ, ինչպէս մի քանի ժամանակ առաջ մայրաքաղաքի թերթերն էին հաղորդում, Շտիւրմերը մտադիր էր շնորհել Լեհաստանին խոստացուած ինքնավարութեան փոխարէն։

Սակայն արդեօք այս ծրագրի սահմաններում ինքնավարութիւնը կգոհացնի՞ լեհերին—այդ պատերազմական ներկայ անորոշ վիճակում դժուար է ասել։

Ա. Ջ.

## ԼՈՒՐԵՐ

Բազէլից հաղորդում են, որ գերմանական զօրքերը արդէն հասել են Արաբիա։ Այդ զօրքերը ուղարկուած են Մեկկայի մեծ շէրիֆի դէմ։ Միւս կողմից՝ Ջեմալ փաշայի զօրքերը պիտի ազատեն և օգնեն արաբական զօրքերով շրջապատուած թիւրք բանակը։

—

«Times»-ի թղթակիցը մատնանշում է, որ ռուսական յարձակումը ոչնչացրել է այն բոլոր ծրագրերը, որ կազմել էին գերմանացիները ամառուայ գործողութիւնների համար։ Աւստրիան պիտի խոնարհուի մօտիկ ապագայում, բայց Գերմանիան դեռ ևս ոչ շուտով։ Գերմանիային կը յուսահատեցնի միայն այն հանգամանքը, երբ դաշնակիցները պատրաստութիւններ տեսնեն պատերազմը շարունակելու դարձեալ երկու տարի։

—

Բուխարեստից հաղորդում են, որ թիւրք-բուլգարական յարաբերութիւնները վատացել են։ Հայաստանից զրկուելով, թիւրքերն ուզում են փոխարէնը հողեր ստանալ Բալկաններում. բուլգարները դէմ են այդ բանին։

—

«Ուտրո Րոսսիի»-ին հաղորդում են, որ Պոլսում զօրահաւաք է յայտարարուած յատկապէս Գալիցիա ուղարկելու համար։ Գալիցիայի թիւրք բանակի հրամանատար է նշանակուած Ջեմալ փաշան։

—

Հաագայից հեռագրում են, որ Գերմանիան բանակցութիւններ է վարում Հոլլանդիայում տեղաւորելու համար գերմանացի 300,000 երեխաներ նրանց սովից ազատելու նպատակով։ Մտադրութիւն կայ դպրոցները և ուրիշ հասարակական շէնքեր յարմարեցնել այդ երեխանց ապաստարանների համար։ Մինչ այդ՝ գերմանացի շատ ընտանիքներ իրենց երեխանց արձակուրդներին ուղարկում են Հոլլանդիա։ Վերջին օրերս այնտեղ են հասել մօտ 400 երեխաներ։

—

Աթէնքից հաղորդում են, որ Գունարիսը վերջնականապէս անցել է Համաձայնութեան պետութիւնների կողմը և եռանդուն ագիտացիա է մղում Վենիզելոսի օգտին, կոչ անելով, որ Յունաստանը պատերազմ յայտարարի Բուլգարիային։

—

Բուխարեստից հաղորդում են, որ ռումանո-բուլգարական փոխադարձ յարաբերութիւններն օր օրի վրայ լարւում են։ Բուլգարները կասկածամտութիւն են ցոյց տալիս Ռումանիայի վերաբերմամբ և գիշերները լուսարձակներով լուսաւորում են ռումանական ամրութիւնները Դանուբի ափին։ Ամեն օր օդանաւեր են թռչում ռումանական հողի վրայ հետախուզութիւնների նպատակով։ Վառնայից թռած մի օդանաւ գնդակակոծուել էր ռումանական սահմանապահների կողմից և յետ էր դարձել։ Բողոք է ուղարկուած Սոֆիա լուսարձակների և օդանաւերի գործողութիւնների դէմ, նախազգուշացնելով, որ Բուխարեստում այդ բոլորը թշնամական գործողութիւններ են նկատւում։

---

# ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

## Ա.

## ՏՐԴԱՏԱՅ ԹՈՒՐԸ

Ա. Ջիվիլեգեանը «Արմեանսկի Վեստնիկի» 26-րդ համարում Երզնկայի առման առթիւ խօսելով Սեպուհ լեռան գագաթին կախուած Տրդատայ թրի աւանդութեան մասին և ակնարկելով Արագածի բարձունքներում կախուած Լուսաւորչի անպարան կանթեղը, որոնք նշաններ են հայի ապագայի, որ միայն թերահաւատները չեն տեսնում—իսկ տեսնողներն, ինչպէս յայտնի է, կոչւում էին ականատես, կաւելացնենք մենք—ասում է. «Ինչպէս չփայլի հրաշալի թուրը, քրիստոնէութեան յաղթանակի նշանը այսպիսի վայրկեանին...»

«Հայաստանն Երզնկայի առմամբ ամբողջապէս չէ նուաճուած։ Դէպի արևմուտք՝ դեռ մինչև Սեբաստիա, հարաւ՝ մինչև Համիդ-Դիարբեքիր և Խարբերդ տարածւում է հայոց պատմական երկիրը մի կողմ թողնելով նոյն իսկ Կիլիկիան, Ռուբինեանց երկիրը։ Բայց Մեծ Հայքի միջուկն արդէն թուրքերից խլուած է, որ ամուր և հաստատ բռնել են ռուս զօրքերը։

«Հենց այժմ, ասում է յարգելի հեղինակը, հասել է վայրկեանը, երբ հայ ժողովուրդը յոյս ունի լսելու ռուս կառավարութիւնից նորա դիտաւորութիւնները Հայաստանի նկատմամբ։ Պատերազմի սկզբից բազմաքանակ արտայայտութիւններ էին շրջում. բայց կամ ֆանտաստիկ էին կամ թէ հենց դիտումները չափազանց փոփոխական էին։ Որովհետև իրողութիւն է որ, ամեն մի հետևեալ արտայայտութիւն ըստ էութեան բաւական տարբերւում էր նախընթացից։ Եւ ոչ մէկը պաշտօնապէս չըյայտարարուեց իզուր։ Այսպէս շարունակուեց մինչև Դումայի վերջին նիստի փակումը, երբ Ս. Դ. Սազոնովը, ի միջի այլոց, մի քանի չափազանց միգապատ խօսքեր նուիրեց և Հայաստանին։»

«Այժմ Ս. Դ. Սազոնովը հեռացաւ և մի այլ գործիչ բռնեց նորա տեղը, և այս փոփոխութիւնը նշանակալից կերպով եկաւ մեր զօրքի Հայաստանում տարած վճռական յաղթութեան միջոցին. ուստի թւում էր, որ այդ ստիպում է յուսալու, թէ ռուս կառավարութիւնը կը հաղորդէ, ինչպէս է ուզում կարգադրել Հայաստանի վիճակը, ինչ համաձայնութիւններ կան դաշնակիցների հետ այդ մասին և ինչ չափով կարող են հայոց ժողովրդի ակնկալութիւնները և յոյսերը իրականանալ։

«Պիտի շողշողա՞յ բոցավառ կայծեր արձակելով Սեպուհի գագաթին Տրդատայ թուրը, թէ՞ պիտի աղօտ հազիւ շողայ և անտեսանելի մնայ «թերահաւատներին»։—

## Բ.

## ՏԱՃԿԱՀԱՅԱՍՏԱՆԻ ԳԱՂԹԱՒՈՐՈՒՄԸ

Թիւրքահայաստանի նորանուաճ տեղերում Ռուսաստանի ներքին նահանգներից տարուած գաղթականներ բնակեցնելու այն ծրագրերը, որոնք յիշատակուած էին Պետական Դումայի ամբիո-

նից, ներկայումս եռանդուն կերպով մշակւում են։ Առաջիկայ գաղթաւորման հետ կապուած խնդիրները մտքերի եռուն փոխանակութեան առարկայ են դարձել զինուորական իշխանութեան և գաղթականական վարչութեան միջև։ Տեղական պայմաններին մօտիկից ծանօթանալու և եղած հողերի քանակը որոշելու համար Կովկասեան ճակատն է ուղևորուել գաղթականական գլխաւոր վարչութեան կառավարչի օգնական կամեր-յունկեր Տատիշչեւ։ Գաղթականական վարչութեան ձեռնարկած հետազօտութիւնն ընդգրկելու է ոչ միայն մեր սահմաններին կից գտնուած վայրերը, այլ և աւելի հեռաւոր շրջաններ, ի միջի այլոց և անչափ պտղաւէտ Մշոյ դաշտը։

Ապագայ գաղթականութեան հիմք կազմելու են, ըստ երևոյթին, այսպէս կոչուած անզէն բանուորական դրուժինաները, որոնք արդէն գտնւում են գաղթաւորման ենթակայ շրջաններում։

Այդ դրուժինաները, որոնցից իւրաքանչիւրը բաղկացած է 1000 հոգուց, սկսած են կազմակերպուել անցեալ տարուայ աշնանից։ Առ այժմ կազմուած են այդպիսի 5 դրուժինա և ներկայումս կազմակերպւում են նորերը։ Նրանց անմիջական գործը լինելու է հողամասերի նախապատրաստումը և ապա այդ հողամասերի մշակումը կովկասեան բանակի պարենաւորումը ապահովելու համար։ Գնալով նշանակուած վայրերը, այդ դրուժինաները՝ որոնց տրուած են համապատասխան գործիքներ և լծկան անասուններ, ձեռնարկել են երկրագործական աշխատանքների՝ մասնագէտ գիւղատնտեսների ղեկավարութեամբ, որոնք նախապէս հետազօտել են դրուժինաների այժմեան բռնած տեղերը։

Դրուժինաների մէջ, իբրև ընդհանուր կանոն, չկան ոչ հայեր, ոչ վրացիներ։

Հարց էր ծագել ներքին նահանգներից ապսպրելու սկզբներում գնացած դրուժինաներին մասնակցողների ընտանիքները և այդ ընտանիքներին յարմարութիւններ տալու նոյն հովիտներում բնակուելու համար։

Այս ծրագրին զուգընթաց գոյութիւն ունի և Թիւրքահայաստանում յատկապէս կազակներ բնակեցնելու ծրագիրը, որովհետև Հիւսիսային Կովկասում կազակներ բնակեցնելու փորձը համարւում է իր վրայ դրուած յոյսերն արդարացնող մի աջող նախադէպ։ Ըստ երևոյթին, այս ծրագրերը յղացողները միտք ունէին Ռուսաստանի և Թիւրքիայի սահմանի վրայ ստեղծել մի բաւական լայն հողաշերտ ռուս բնակչութեամբ, որպէս զի այդ հողաշերտը անջատի ռուսահայերին թիւրքահայերից։

Ինչ վերաբերում է սահմանին կից գտնուած թիւրքական շրջանների արմատական բնակչութեանը, վերջինս, քիչ բացառութեամբ, փախել է Ռուսաստանի սահմանները կամ ջնջուել է թիւրքերի կողմից (քրիստոնեաները), կամ թէ հեռացել է Թիւրքիայի խորքը (մահմեդականները)։ Իսկ վերոյիշեալ հովիտներում համեմատական հանգստութիւն տիրելուց յետոյ՝ փախած բնակչութեան մի մասը վերադարձել է հայրենիք և ուզում էր ձեռնարկել դաշտերի մշակումը։

Բայց այստեղ մտնանշուել էր, որ կրած սարսափներից յետոյ հեշտութեամբ խուճապի (պանիկայի) ենթարկուող բնակչութիւնը ռազմական հանգամանքից հարկադրուած զօրքերի կատարած տեղափոխութեան ժամանակ կարող է խճողել ճանապարհները և այդպիսով խանգարել շարժումը։

Շատ գիւղացիներ ձեռք են զարկել աշխատանքների։ Ընդ սմին, սակայն, քայքայուած գիւղերի բնակիչներից ոմանք բնակութիւն են հաստատել ոչ թէ իրենց հայրենի գիւղերում, որոնք այլ ևս գոյութիւն չունին, այլ հարևան չփլատուած գիւղերում։ Որպէս զի ապագայում թիւրիմացութիւններ չլինին, Կովկասեան բանակի Օգոստափառ Գլխաւոր Հրամանատարը այս տարուայ մարտ ամսին հրամայել էր նախազգուշացնել ուրիշների հողերում բնակութիւն հաստատած բնակիչներին, որ նուաճուած տեղերում ռուսական քաղաքացիական վարչութիւնը ներմուծուելուց յետոյ այդպիսի բնակիչները կը հեռացուեն իրենց բռնած հողամասերից։ Ընդ սմին Գլխաւոր Հրամանատարը մատնանշել է, որ Ալաշկերտի, Բայազիդի և Դիադինի հովիտներում դատարկ հողերը կարող են կապալով տրուել և ցանկացողներին՝ մշակելու և օգտագործելու համար, մինչև որ վերադառնան նրանց օրինական տէրերը։

Այսպիսով Նորին Բարձրութեան կամքով այդ հովիտների ողջ մնացած բնակիչներին ընդարձակ հնարաւորութիւն էր տրւում ձեռնարկելու իրենց կամ կապալով վերցրած հողերի խաղաղ մշակումը։

Այն բանից յետոյ, երբ հրատարակուեց Օգոստափառ Գլխաւոր Հրամանատարի հրամանը հողերը ցանկացողներին կապալով տալու մասին՝ շուտով զօրավար Իւդենիչը կարգադրեց, որ բացի ռուս գաղթականներից ու կազակներից ուրիշ եկւոր բնակիչների թոյլ չտրուի բնակութիւն հաստատելու Ալաշկերտի, Բայազիդի և Դիադինի հովիտներում։

Թոյլ է տրուած վերադառնալ արմատական բնակիչներից միայն նրանց, որոնք վաւերագրերով և անշարժ կալուածների սեփականատիրական վաւերագրերով կապացուցանեն հողի վրայ ունեցած իրաւունքը։ Այս կարգադրութիւնը տեղական բնակիչների առջև փակում էր հայրենիք վերադառնալու հնարաւորութիւնը, որովհետև ծիծաղելի է Թիւրքիայի վերաբերմամբ խօսել սեփականատիրական վաւերագրերի (купчая крѣпость) մասին, իսկ ուրիշ փաստաթղթեր գրեթէ միշտ կորած են լինում փախուստի ժամանակ։

Երեք հովիտների, մասամբ և Բասենի հովտի ողջ մնացած բուն բնակիչները հնարաւորութիւն չունին ձեռնարկելու խաղաղ աշխատանքի։

Գ.

## ԵՐԶՆԿԱՅԻ ՀԱՅՈՑ ՊԱՏԳԱՄԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ

Երզնկայից «Кавказ. Сл.»-ի թղթակից Е. Духовъ-ը հաղորդում է.

«Յուլիսի 20-ին Երզնկայում մնացած թուրք, յոյն և հայ բնակիչները հաւաքուեցին քաղաքի հրապարակը և ներկայացան Կովկասեան զօրքերի Բարձրագոյն Հրամանատարին։

Հայ ժողովրդի պատգամաւորութիւնը կազմուած էր մի քանի պառաւներից, օրիորդներից և երեխաներից։ Տղամարդիկ չէին մնացել։ Օրիորդներից մէկը աղ ու հաց մատուց Մեծ Իշխանին, իսկ միւսը՝ Հեղինէ Աստուրեանը (թիֆլիսեցի, աւարտած Բաթումի պրոգիմնազիան) հետևեալ փոքրիկ ճառով դիմեց Փոխարքային.

«Ձերդ Կայսերական Բարձրութիւն. Ձեր Բարձրագոյն առաջնորդութեամբ ռուս քաջարի զօրքերը փախցնելով թշնամիներին, նուաճեցին Հայաստանի վերջին քաղաքը։ Այս շրջաններում ապրող հարիւր հազարաւոր հայ բնակիչներից ազատուեցին միայն անարգանքի և տանջանքների ենթարկուած հարիւրաւոր աղջիկներ ու երեխաներ... Մենք զրկուել ենք մեր պատուից, հարազատներից և ստացուածքից, կորցրել ենք դարերով հաւաքուած մեր ազգային ու տնտեսական բարգաւաճ կեանքը և ճակատագրի քմահաճոյքին յանձնուել...

Սրտի բաբախմամբ սպասելով մեր ազատարարների գալուն, մենք, թուրքերի հարեմական ճանկերից և գազանութիւններից ազատուածներս, այժմ ընկնում ենք յոտս Ձերդ Կայսերական Բարձրութեան, որպէս թրքական բռնակալութիւնից մեզ ազատարարների։

Այժմ Ձեր ձեռքումն է մեր բախտը»։

Երզնկայի շրջանի հայերին մեծ օգնութիւն են ցոյց տուել Դերսիմի շրջանի Ղզլբաշ քիւրդերը։ Նրանք նոյնիսկ զինուած ընդհարումներ են ունեցել կառավարութեան հետ, չեն ընկճուել

կառավարութեան սպառնալիքներից և պահել ու կերակրել են իրենց մօտ ապաստանած հայերին։ Այդ քրդերն արդէն 1500-ից աւելի հայ երեխաներ ու կին են յանձնել ռուս զօրքին։ Տաճիկների նահանջի ժամանակ դերսիմցի քրդերը զինուած երկար տեղ հալածել են նրանց և մեծ վնասներ հասցրել։»

Միամիտ հայերը թող հասկանան, որ նոյնիսկ բնութեան այս պարզամիտ համարուած որդիքը սառն հաշուով են առաջնորդւել։ Սոքա հասկանալով որ ռումի—ինչպէս կոչում են քրդերը օսմանցիներին—անկումը մօտենում է, և ռուսներին հաճոյ լինելու համար պաշտպանել են հայերին, որոնց համարում են ռուսների դաշնակից։

—

«Рус. Вѣд.»-ին հեռագրում են, որ Թիֆլիսում կազմակերպւում է ծառայողների շտատ Թիւրքիայում նուաճուած շրջաններում մտցուելիք քաղաքացիական վարչութեան համար։ Նուաճուած շրջանների ընդհանուր-նահանգապետի պաշտօնավայրը կը լինի Թիֆլիսը։

—

Թերթերը հաղորդում են, որ Թիւրքերը պաշտօնանկ են արել հայոց պատրիարքին իր ռուսասիրութեան համար։

---

## ՀԱՅՈՑ ՀԱՐՑԸ ԸՍՏ ԻՏԱԼԱՑԻ ՀՐԱՊԱՐԱԿԱԽՕՍՆԵՐԻ

### Ա.

Միլանում հրատարակուող La scuola Catolica հանդէսի 12 երես բռնող մի լուրջ ուսումնասիրութեան մէջ ականաւոր գրականագէտ Ֆիլիպպօ Մէտէան, որ ճանաչուած է որպէս ձեռնհաս մասնագէտ Հայոց հարցի, Հայաստանի մեծ մասի ռուսներից գրաւման առթիւ հայ կոտորածների մի կուռ պատմականին անելուց յետոյ հետևեալ խորհրդածութիւններն է անում *)։

—«...Բայց եթէ այսօրուան գրաւուածը ռուսները պահեն իրենց ձեռքին, այդ կը լինի՝ անտարակոյս մի այլ ծանրակշիռ իրողութեան սկիզբը, որ է բովանդակ Հայաստանի միացումն ռուսաց կայսրութեան։ Ի՞նչ մտածելու է նմանօրինակ իրողութեան հանդէպ։

Ճշմարիտն ասած դժբաղդ Հայոց ազգը մինչև 1880 թուականը ռուսական տիրապետութեան մաս կազմող երկրամասում բաւականին լաւ վիճակում էր. երբ ռուս բիւրօկրատիան էլ սկըսեց վարակուել «Հայկական Վտանգի» մտահոգութիւնով։

Ծնունդ առնելով Կորսակովի փոխարքայութեան օրով սկսած հալածանքներից, որ արտայայտուեցան հայոց ուսումնարանների և հայ ընկերութիւնների փակելով, մինչև 1896 թուականը՝ երբ սորա յաջորդ իշխան Գալիցին չափ ու սահմանը կորցրեց իւր հալածող գործերով, բանը հասցնելով մինչև հայ եկեղեցու կալուածների գրաւումը, որի հետևանքն եղաւ, բոլոր հայ ազգի խոր վրդովմունքը և ընդվզելու պատրաստութիւնը։ Գալիցինը մտածեց այդ շարժումը արեան մէջ խեղդել, նետելով թուրքերը հայերի վրայ, բայց որի դէմ հայերը, գլուխ ունենալով իրենց երկու կազմակերպութիւնները՝ դաշնակցութիւն և հնչակեան, հսկայական դիմադրութիւն արին և պաշտպանուեցան, մինչև ռուս բարձր կառավարութիւնն ստիպուած եղաւ նոցա իրաւունքը ճանաչել և վերադարձրեց հայ եկեղեցու կալուածները հայերուն։ Այս ամենը չէր նշանակում սակայն ռուսական հալածանքի վերջ։ Այս մէկը լաւ գիտէ Սիբիրը, որ թէ այն ժամանակուանից, դուցէ և այսօր էլ, նորից նոր ընդունում է իւր ծոցում հայ հալածական մտաւորականութիւնը։

1914 թուականը, պէտք է գիտենալ, այն արաւ, որ փոխուեց եթէ ոչ ռուսաց հոգեբանութիւնը դէպի հայը, գոնէ քաղաքականութիւնը, ճիշտ ինչպէս Լեհացոց նկատմամբ։ Այս փոփոխման արդիւնք էր արտաքին գործոց նախարար Սազոնովի Պետական Դումայում արտասանած ճառի սա խօսքերը.

«Թուրքերը փախչելով վրայ հասնող ուրականից իրենց «սիրտը հովացնում են դեռ ևս իրենց հպատակ քրիստոնեաների «վրայ գործելով չտեսնուած, չլսուած գազանութիւններ։ Հայերը «կրում են անլուր հալածանքներ, ինչ որ սակայն չկարողացաւ «մթագնել նոցա դատողութիւնը. քանի որ հայ կամաւորները «այսօր քաջաբար մարտնչում են իրենց կեղեքիչների դէմ»։

Եւ այս հասկանալի է։ Ռուսաստանը պատերազմի բռնուելով՝ նախ կենտրոնական կայսրութիւնների, ապա նաև Թուրքիոյ հետ, զգաց որ հարկաւոր էր պատերազմի երկու ճակատները լինելիք և հաւասարապէս երեք կողմերով բաժան բաժան երկիրների՝ Հայաստանի և Լեհաստանի բնակիչների համակրանքը այս գլխից ապահովացնել։ Եւ ահա Մեծ Իշխան Օգոստ. Գերագոյն Հրամանատարը հրատարակեց անմոռանալի հրովարտակը՝ ուղղուած Լեհ ազգին, որով հրաւիրում էր նրան մի սիրտ և մի հոգի գործել Ցարի կառավարութեան հետ։ Ապա երբ ռուսաց Կայսր Նիկողայոս Բ. անձամբ այցի գնաց իւր աչքով տեսնելու արևելեան (ռուս-թուրք) ռազմաբեմը, մի կոչով դիմում էր հայերին, կոչ՝ որը արժէ որ յիշենք.

«Հայեր. համայն մեծ Ռուսաստանի ժողովուրդները սկսած արևելքից մինչև արևմուտք ոտքի ելան Իմ կոչի վրայ. հայերիդ համար, որոնց հայրերը հինգ դար տևող բռնակալութեան լուծի տակ բնաջնջուեցան, և երբ այսօր քանիսը ձեզանից տանում են ամենազզուելի անարգանքներ, հասել է վերջապէս ազատութեան ժամը։ Ռուս ժողովուրդը հպարտութեամբ յիշում է իւր հռչա-«կաւոր և մեծանուն հայ որդիքը։ Լազարեաններ, Լօրիս-Մելիքովներ, «որ կողք կողքի իրանց սլաւ եղբայրների հետ օգնեցան հայրենիքի «մեծութեան համար։ Ձեր դարաւոր հաւատարմութիւնը գրաւա-«կան է Ինձ համար, որ դուք լի վերջնական յաղթանակի և մեր «զէնքի յաջողութեան մասին անխախտ հաւատքով, կը գիտենաք «կատարել Ձեր պարտքը։»

Ռուսաց տակտիկան միայն խօսքերով չի սահմանափակւում։ Նիկողայոս Բ.-ը, որ 1894-ին գահ բարձրանալու օրից ոչ մի անգամ չէր այցելել Կովկասին, այս անգամ չվարանեց մտնել Թիֆլիս և այնտեղ դարաւոր մայր եկեղեցում խօսքն ուղղելով ծերունի պատրիարքին՝ հրաւիրեց բոլոր իւր հպատակներին հաւատարմութեամբ ծառայել ռուս հայրենիքին։ Ապա ճանապարհուելով դէպի սահմանագլուխը անցաւ ռուսական Հայաստանի մեծ կենտրոններից մինչև Սարիղամիշ։ Անակնկալն ընդհանուր էր։ Սովորական ժամանակներում համայն Ռուսաստանի Ինքնակալը չէր համարձակուել մտնել Կովկասեան անհաշտութեան այդ օջախներին։ Եւ ահա ոգևորութեան մի կոհակ անցաւ Ռուսական Հայաստանի մի ծայրից միւսը։ Հազարներով փութացին հայ կամաւորները՝ որոնց մէջ հարիւրաւոր ուսանողներ Պետրոգրադի, Մոսկուայի, Կիևի համալսարաններից։ Մինչև իսկ Ֆրանսիայից և Շուեցարիայից երիտասարդ հայեր պարտք համարեցին իրենց արեան տուրքը բերել*)։

Ահա այս ժամանակ ռուսական քաղաքականութեան մէջ դէպի հայերը մի փոփոխութիւն առաջացաւ։ Կովկասի Փոխարքայ Կոմս Վորոնցով-Դաշկովը մի կողմ դրեց բռնի (?) ռուսացման ծրագիրները։

—«Հաւատա՞լ արդեօք», ինքնիրեն հարց տուաւ հայ մտակաւորութիւնը։ «Ռուս կառավարութեան այս նոր ուղղութիւնը երկա՞ր կը տևէ արդեօք»։ «Մեզ տրուած ազատութեան խոստում-

---

*) Յարգելի հեղինակի թուերը չափազանցուած են, և մէկ-երկու տեղեկութիւններ ստուգութեան կարօտ են և կամ ճիշտ չեն կամ գոնեա մեզ անյայտ են. ուստի և խմբագրութիւնս համաձայն չէ ինչ ինչ կէտերին։

*) Յօդուածագիրը չի իմանում, որ Հիւսիսային և Հարաւային Ամերիկաներից, Եգիպտոսից, Բուլղարիայից և Ռումանիայից վազելով եկան հազարաւոր երիտասարդներ հայ կամաւորական խմբերին մասնակցելու։

Ա. Ֆ.

ները չե՛ն մոռանար»։ Եւ շատերն ասացին—չհաւատալ և չյուսալ իզուր, յիշելով թէ ինչպէս 1828-ին ռուս-պարսկական պատերազմի ժամանակ՝ որին մասնակցեցան հայերը իրենց գլուխն ունենալով Թիֆլիսի առաջնորդ արքեպիսկոպոսը և թէ 1878-ին ռուս-թրքական պատերազմի ժամանակ, որը վարեցին հայ զօրապետներ, որոնց սպարապետը Լորիս-Մելիքեան (յետագայում մինիստր և դիկտատոր) հայոց յոյսերը զօրավիգ գտել էին դէպքերի յաջորդութեան մէջ միայն։ Բայց հայերի այսպիսի թերահաւատութիւնները ցրելու համար ահա առաջ եկան համաձայնութեան պետութիւնների քանիցս կրկնած այն յայտարարութիւնները, ըստ որում, ներկայ պատերազմը մղւում է բոլոր ազատութեան և անկախութեան այն հարցերի համար, որոնք մինչև այդ անվճիռ մընացել են պատերազմի ընդգրկած երկիրներում։ Այսպիսով Ցարի խօսքը մի անգամ էլ արժէք էր ստանում Իւր դաշնակիցների հաւաստիացումներով։

Այս բոլորն այնտեղ հասցրեց, որ հայերը սիրտ առին և համոզուեցին, որ իրենց ուրիշ բան չէր մնում, բայց եթէ կապել իրենց հարցը Ռուսաստանի հարցի հետ։

Անվստահութիւնը վերացաւ և ներկայ պատերազմի սկզբից սկսած և դեռ մինչև այսօր հայերը մատուցին և շարունակում են մատուցանել ռուսաց Կայսրին գնահատելի ծառայութիւններ։ Նըրանցից շուրջ 150,000 հոգի ռուս կանոնաւոր զօրքի շարքերում կռւում են երկու ճակատների վրայ, մինչդեռ մի 20,000 հոգու չափ կամաւորների փոքրիկ բանակ էլ մայր հայրենիքի հողի վըրայ սրտով աշխատակցում է ընդհանուր գործին։

Այս հայ կամաւորներին են պարտական անցեալ մայիս ամսուան Վանի ազատագրումը, ինչպէս և մարտական ուրիշ մի շարք գործեր, որոնցով նոքա թրքաց կարևոր ուժեր զբաղեցնելով, յաճախ լաւ արդիւնքներ ձեռք բերելու պատճառ եղան։

Հայերի կողմից դէպի Ռուսաստանը նմանօրինակ վերաբերմունքը արդիւնք է 1914-ի ամառը Էրզրումում Հ. Յ. Դ. կուսակցութեան լիազօրների կայացրած վճռին։ Թուրք կառավարութիւնը իմանալով այս՝ իւր պատուիրակների միջոցաւ հրաւիրել է Հ. Յ. Դ-ը, որ սա իւր վրայ վերցնէ Կովկասում հայերի ապստամբութիւն առաջացնելու գործը, խոստանալով փոխարէնը ինքնավարութիւն մի երկրամասի, որի մէջ մտնում են Կարս, Վան, Բաղէշ։

Դաշնակցութեան խորհուրդը մերժեց այս առաջարկը կըտրական կերպով, իւր կողմից միմիայն խորհուրդ տալով Թիւրք կառավարութեան, որ սա չխառնուի Եւրոպական ընդհարման, որ մի կորստաբեր արկածախնդրութիւն է և կարող էր տանել Թիւրքիան դէպի կործանումն։ Թուրք պատուիրակները դժգոհ մնացին և ամբաստանեցին Հ. Յ. Դ. համագումարի անդամներին՝ իրենց դէպի Թիւրքիան այս կերպ վարմունքին համար։

Հ. Յ. Դ-թեան համագումարը վճռեց, որ հայերը չպէտք է ոչ մի կերպով մասնակցութիւն ունենային Թուրքաց մտադրած ծրագրի իրագործման և բաւականանալու էին օրինական սահմաններում մնալով։

Այս միակ հնարաւոր ձեն էր թրքահայերի դէպի Ռուսաստանն ունեցած զգացման արտայայտութեան, որը լաւ հասկնալով Թիւրքիան հակամարդկային և բարբարոս ձևերով պատասխանեց, որ մենք տեսանք և որ պատճառ եղան, որ հայ ճնշուած ազգը ինքզինքը նետեց Ցարի գիրկը։

Ես կարծում եմ, որ վերջ ի վերջոյ Հայաստանը գոհ չէ մնալու Թուրքաց տիրապետութեան տեղ ռուսաց տիրապետութիւնը տեսնելով։ Ինչ էլ որ լինին յանձնառութիւնները, որոնց՝ Ռուսաստանը՝ յաղթական լինելու դէպքում էլ պիտի ենթարկուի. ինչ էլ որ լինին նաև Ռուսաստանի դաշնակիցների շահերը— և գուցէ և այն այսօր թշնամի պետութիւնների շահերը—հայոց հարցը լուծելու համար մի միջոց գտնելը, դժուար չէ մտքում պահել, որ այդ կերպ լուծումը կարող է պատահի որ լինի Մոսկովեան տիրապետութեան ծաւալումը և ամրապնդումը, մինչև իսկ հաշուի չառնելով ապագայի ռուս-թուրք թշնամութեան պատահականութիւնը, որ նորից վտանգի ենթարկած պիտի լինէին ստրկացրած դժբաղդ ազգի ճակատագիրը։ Անուրանալի է որ Հայաստանը, ինչպէս և Լեհաստանը վերածնուելու միայն մի ստոյգ ճանապարհ ունին, որ է նրանց քաղաքական ինքնավարութիւնը։

Ոմանք մտածում են որ հայերը լեհերի բաղդատմամբ այնպէս էլ հասունացած չեն քաղաքականապէս, որ կարողանային առանձին պետութիւն կազմել և իրենք իրենց կառավարուել։ Ապա կան մի շարք այլ նկատառութիւններ, ըստ որոնց լաւ կը լինէր հայոց համար խնամակալութեան մի ռէժիմ։ Կարող է և այսպէս լինել, միայն խնամակալական ռէժիմը չպէտք է լինի և ոչ մի դէպքում հպատակեցնող՝ ենթարկող ռէժիմ։ Ապագայի խաղաղութեան վեհաժողովում մշակուելիք միջազգային իրաւակարգի մէջ կարելի է որ ուսումնասիրուի նաև այս հարցը, բայց մի տիրապետութիւնը՝ առանց այլ և այլի՝ մի ուրիշ տիրապետութիւնով փոխանակելը խնդրի լուծումը չի լինիլ։

Թարգմ. Արշ. Ֆէթվաճեանց

# Գրական-Գիտական

## ՔԱՐԱՍԻ՛ՐՏ ԱՂՋԻԿ

Աչերըդ սև-սև սաթի նման,
երեսըդ ճերմակ կաթի նման,
կը նազես ծովու բադի նման,
ծամթ ծովէն ծնուած, ծաւի աղջիկ։

Մազերըդ ջրվէժ ուսիդ կուտակ,
շրթերըդ բոսոր անգին սուտակ,
ո՜ւյ, լեզուդ անուշ, դիւթող թութակ,
սէգ սարի սուսան, սիրո՜ւն աղջիկ։

Քո կուրծքը փրփուր, ովկեան վարար,
վա՜խ սիրտըս քեզ հետ առիր տարար,
աչերուս սեցաւ աշխարըն արար,
հէ՜յ, հոգի հանող, հովի՜ աղջիկ։

Հպարտ ես Սասմայ սարի նման,
քո մէջքը դալար լարի նման,
ա՜խ, միայն սիրտդ է քարի նման,
քու՜ն, գիշեր քամող, քարսիրտ աղջիկ։

Ազատ-Վշտունի

### ՆԱՀԱՆՋԻ ԴՐՈՒԱԳՆԵՐԻՑ *)

3

### ԱՐԵԱՆ ՋՈՐԸ

Կեանքի վտանգը ստիպում է մեզ լարել մեր ջղերը. եթէ ուզենք էլ՝ անկարող ենք հանգիստ քնանալ։ Պէտք է օգտուել թանկագին գիշերից, ինչքան էլ լուսինը դեռ իր անկողնումը լինի։

Եւ քայլում ենք մենք ափլփելով, ընկնելով ու կանգնելով երբեմն նոյն իսկ ջրերի ցեխերի միջից։ Բ է ն դ ի-մ ա հ ո ւ վտակները բաւական արգելք են լինում մեր ընթացքին. ստիպուած շատ անգամ ոտներս հանում և իրար շալկելով անց էին կենում ջուրը։

* Տես «Համբաւաբեր» № 31։

Ազօթարանը հագիւ բացուած՝ հասնում ենք Բերկրի։

Էն ինչ խաժամուժ, եռ ու զեռ էր այնտեղ։ Ամբողջ Վասպուրականը կարծես եկել, համախմբուել էր աւերակ բերդի շուրջը և հովանու տակը։ Երևում են և ռուս զօրքեր ու հայ կամաւորներ, որոնց ներկայութիւնը մի քիչ սրտապնդում է մեզ։

Բայց հագիւ նստած՝ մի ծանօթ կամաւոր մօտենում է մեզ և գուժում վտանգը. «Դ... պատուիրել է շուտով հեռանալ Բերկրուց...»

Հազար զոռով հագիւ ենք յաջողում մեր հիւանդներին զետեղել սայլերի վրայ. իսկ իրերը սրան ու նրան էմանէթ տալով (որովհետև մեր եզը մեր առջևից գողացել էին), խառնւում ենք յոգնախոնջ կարաւանին, որը աստիճանաբար խտանում, նեղանում է դէպի Բերկրիի ձորը տանող միակ ճանապարհի վրայ։

Տէր-Յուսկան որդու վանքը այնտեղ, բարձրութեան վրայ թառած՝ նայում է մեզ։ Կարծես սրտողած է նա՝ տեսնելով որ այսքան բազմութեան միջից մի ստուեր անգամ չի շարժւում դէպի ինքը...

Հասնում ենք Բէնդի-Մահու կամրջին, ձգուած նեղ ձորի անդունդի վրայ, որի միջից գորգոռալով քշւում է գետը։ Կարծես սա երեկուան մեր տեսած լալկան Բէնդի-Մահին չլինի, այլ նրա գիժ եղբայրը, սարերի հպարտ զաւակը։ Եւ շառաչում է գետը, ցնցւում, փշրում իր ափերը, փշրւում ինքն էլ գայրոյթի փրփուրներով։

Երկար նայում եմ ես նրա խորքը, չափում այն անդունդը որ կայ կամրջի ու գետի միջև, զննում նրա օձապտոյտ ղալարները և երևակայում այն զարհուրելի վայրկեանը՝ երբ «Թուրքեղօր» դաւադիր ձեռքը մէկիկ-մէկիկ վայր էր գլորում այստեղից անզէն ու կապկպուած հայ գեղջուկին—օսմանեան ամալիաքերներին, որոնք նրանց յաղթանակի համար ճանապարհ էին շինում այս անապատների մէջ... Գետի ամեն մի վշշոցը, ամեն մի գալարը, այսքան բուռն ու ցասկոտ, կարծես նրանց վրէժն է կանչում անդունդի միջից։ Եւ այն փրփրադէզ ցայտքերը, որոնք ապառաժների վրայ ջարդուելով փշուր-փշուր մաղւում են վերստին գետի լայն երախի մէջ, ուշադիր հայի ականջին կանչում են շարունակ. «Վրէժ-վրէժ, այսպէս ջարդուեցան ոսկորները նրանց և կուտակ-կուտակ թաղուեցան այս ալիքների մէջ... վրէժ-վրէժ....»

Ճանապարհը այսուհետև սկսում է ձորի միջով, երկար, մանուածապատ, քարքրոտ և յաճախ փոշելից։ Չլինէր Բէնդի-Մահին, ձորը կը դառնար միօրեայ ապաշխարութեան վայր՝ կովկասանց ու դարձ անողների համար։ Եւ այն խորութիւնը, որի միջով անցնում է գետը, տեղ-տեղ զարդարուած է հողի մի նեղ շերտով, որը ջրից ծծուած խոնաւութեան շնորհիւ ծածկուած է մշտականաչ խոտով, աչքին այնքան հաճոյալի՝ այդ լերկ քարերի, ամայի ձորի մէջ։

Իսկական աւազակների բոյն կարող է դառնալ Բերկրու ձորը։ Արևելքից անտանելի գետն ու եզերող բարձրութիւններն են կտրում զոհի ճամբան, իսկ արևմուտքից բլուրների ու սարերի այն երկար շղթան՝ որի տուտը գնում, հասնում Թափարէզին։ Եւ իսկապէս համիդեան օրերին այս ձորով անցնողը իր պատանքը ծոցն առնելու էր... Միամիտ անցորդը ինչպէ՞ս նկատէ մի քիչ վերև, սև քարերի միջին թաք կացած մարդ-գազաններին, որոնց յանկարծական սպառազէն երևումը կամ հրազէնների համազարկը բաւական են արդէն շշմեցնելու իրենց որսին, ինչքան էլ վերջինս տղամարդու սիրտ ունենայ։

Նայում եմ ես այդ սեփ-սև քարաժայռերին և բնազդաբար սպասում, թէ երբ պիտի պայթի այդ տեղից քրդի հրացանը... Ճիշտ երկու օր առաջ այս միևնոյն տեղից են յարձակուել քրդերը փախստականների առաջին կարաւանի վրայ։

Մարդիկ, սայլեր ու կենդանիներ մրջիւնի նման շարուած իրար ետև՝ անցնելու հերթին են սպասում։ Եթէ յանկարծ առջևի սայլն է կոտրւում կամ լծկանը ճխլւում, նստում, ետև մնացած ամբողջ կարաւանը պէտք է կանգ առնի, սպասէ նրա բաղդին։ Այս պատճառով էլ իրերօգնութիւնը մի քիչ զգալի է այսօր մարդկանց մօտ, որովհետև մէկի վնասը անմիջապէս անդրադառնում է միւսի վրայ։ Ազատ են միայն ոչխարի հօտերն, որոնք սարերի փէշերով, փուշ ու տատասկ ծամելով գնում են, չմոռնալով միաժամանակ ահագին փոշի թափել վերևից առանց այն էլ փոշեծածկ անցորդների վրայ։

Կարաւանի շարքերում կան այսօր և ռուս «Կարմիր Խաչի» զինուորներ՝ իրենց հիւանդներով ու պաշարարձ կառքերով։ Իսկ վանեցի զինուած տղամարդիկ ցանուցրիւ գնում են իրենց ընտանիքների հետ՝ յաճախ հրացանները կանանց յանձնած, որպէսզի իրանք վերցնեն աւելի ծանրագոյն բեռները։ Չկայ վտանգի նախազգուշութիւն. թշնամու հաւանականութեան մասին ոչ մի մտավախութիւն, չէ՞ որ Դ.-ն Բերկրի է, իսկ մօտակայ բարձունքներում, ասում են, որ ռուսական պահակներն են հսկում...

Թռչնիկ

## ԵՐԵԽԱՆԵՐԻ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԵԱՆ ՆՈՐ ԴՊՐՈՑ.

Երեխաների սկզբնական դաստիարակութիւնը շատ մեծ նշանակութիւն ունի նրա ամբողջ կեանքի զարգացման համար. այդ կեանքն է կազմակերպում նրա առողջութիւնը, բնաւորութիւնը, ընդունակութիւնները, ձգտումները յաջողութեան և երջանկութեան։

Այդ ճշմարտութիւնը այժմ բոլոր բժիշկների և հոգեբանների կողմից ընդունւում է, իսկ Ամերիկայում արդէն գործնական դարձնելու համար արուած են որոշ գրական քայլեր։ Նիւ-Եորկում, Բոստոնում, Ֆիլադելֆիայում և ուրիշ քաղաքներում գոյութիւն ունեն առանձին և գիշերօթիկ դպրոցներ, որտեղից դաստիարակութեան հին ձևերը համարեա վտարուած են և որտեղ մարմնի ու հոգու առողջապահութիւնը ի նկատի ունեն, որին և հասնում են միայն այն ճանապարհներով, որ այժմ համարւում են բանական (раціонально).

Հիմնական օրէնքն այսպէս է. երեխայի ջղերը պահանջում են սկզբում շատ զգուշաւոր հոգացողութիւն. այսպէս՝ ամեն մի վախ, ամեն մի յուզմունք, վշտացում, լաց թողնում են երեխայի հոգու և մարմնի վրայ ծանր հետքեր, որը և արտայայտւում է նրա ապագայ կեանքի ընթացքում։

Ինչպիսի անմտութիւն էր առհասարակ երեխային տալ խնամելու տգէտ դայեակների, որոնք երեխաներին վախեցնում էին հազար ու մի սարսափներով և վարակում իրենց յատուկ նախապաշարմունքներով և անմիտ երկիւղներով։

Ֆիլադելֆիայի Հոգէնեարդաբանական կլինիկայում արուած են հետազօտումներ մի շարք ջղային հիւանդների վրայ, որոնց հիւանդութիւնը հետևանք էր մանկութեան ժամանակ ստացած վախի։

Նրանցից մէկին երեխայութեան ժամանակ սաստիկ վախեցրել էին նկարագրելով մեղաւորների դժոխքում կրելիք տանջանքների պատկերները. միւսին զանազան պատմութիւններով, թէ իրանց ամարանոցի շրջակայքում երևացել են զարհուրելի գայլեր, լուսավառ աչքերով. երրորդը հիւանդացել էր ուշաթափութիւնից յետոյ, որ նոր պատահել էր նորան, երբ համարեա ուժով նրան ինչ-որ նկար էին ցոյց տալիս, որից նա վախենում էր։ Այդպիսի դէպքեր շատ շատ կային։

Այժմեան բժշկականութիւնը գտնում է, որ պէտք է շատ զգոյշ և ուշադիր վերաբերուել երեխաների ամեն մի գանգատին և թափանցել նրանց տրամադրութեանց պատճառների մէջ, պահանջելով, ինչպէս այժմ ընդունուած է, համահաւասար ջանք ու ընդունակութիւններ։ Այն երեխաները, որոնց ծոյլ են անուանում, նրանք պարզապէս դանդաղկոտ և վատառողջ կազմուածքի տէր են, որոնց անհրաժեշտ է համապատասխան բժշկութիւն, բայց ոչ պատիժներ ու սպառնալիքներ։

Յաճախ երեխան տանջւում է տակաւին յիշողութեան բաւականաչափ զարգացած չը լինելու պատճառով, և նորանից չի կարելի պահանջել այն զարգացումը և այն գիտելիքը, որ դիւրութեամբ իւրացնում են ուրիշները. սնունդի դժուարմարսութիւնը նոյնպէս յաճախ պատճառ է դառնում անուշադրութեան և քնէածութեան։

Ամեն մի առանձնակի դէպք այստեղ պէտք է մանրազննին քննութեամբ լուծել. և անհատական կրթութեան այդ խնդիրը ինկատի ունեն Ամերիկայի քաղաքների այս դպրոցները։ Այնտեղ երեխաների բախտը յանձնուած է մասնագէտների. երեխաներն ապրում են բնութեան գրկում, ծաղիկների և ընտանի կենդանիների միջում և զարգանում են առողջարար սնունդով, շրջապատուած միշտ քնքոյշ փայփայանքով ու բարեացակամ վերաբերմունքով։

Ահա այս է նորակազմ հիմնարկութեանց առանձնայատկութիւնը. ոչ մի սուր խօսք, բժշկութիւն և ներշնչումն, ներգործութիւն կամքի և բանականութեան վրայ երկիւղի և պատիժների փոխարէն։ Ծնողները շատ անգամ ազատ ժամանակ չեն ունենում երեխաների վրայ այնքան ուշադրութիւն դարձնելու, որչափ անհրաժեշտ է և վերջապէս նրանք այնքան հմտութիւն էլ չունին։

Այդպիսի հասարակական մեծ խնդիր, ինչպիսին է նոր սերունդի դաստիարակութիւնը, պէտք է յանձնել նրանց, որոնք այդ նպատակին մասնագիտօրէն հետեւում են, որոնք ի կոչմանէ և սիրով ընտրել են այս արուեստը։

Այդպէս է որոշումը Ամերիկայի քաղաքների, ուր մանկավարժներ, բժիշկներ ու ծնողներ միասին ժողովուել էին խորհրդակցութեան։

---

# Պատմական

## ՏՈՒՐՈՒԲԵՐԱՆԻ*) ՔՐԴՈՒԹԻՒՆԸ

### Ա.

Դժուարին է պատմական և ժամանակագրական ցուցմունքներով որոշել քրդութեան մուտքը Հայաստան։ Քրդութիւնն իսլամն ընդունելէ յետոյ Խալիֆայութեան անկման շրջաններում՝ ԲէՆի Շէտտատեան իսլամ գերդաստան հաստատուած ենք գտնում Արաքսի և Կուրի հովտին մէջ. սրանց ցեղերը հաւանաբար թափուեցան Ղարաբաղի լեռներուն վրայ։ Սորանց մասնաւոր մէկ ցեղին անունն էր Ռէվատի, որ տէր դարձաւ Գանձակին և մէկ իշխանը՝ Աբուլ-Սուար, իբր Դուինի իշխան, յաջորդը՝ որդին Փատլուն, որ Անին գնեց Սելջուգեան մի Սուլթանէ և տուաւ իր Մանուչար եղբօրը (1072)։

Սորան յաջորդում է մի ուրիշ Աբուլ-Սուար, որ Վրաց Դաւիթ Բ. թագաւորէն գերի է տարւում Թիֆլիս, ուր բանտին մէջ մեռնում է իր երկու զաւակներուն հետ միասին։ Անդրանիկ որդին. Փատլուն, յաջողում է ստանձնել Անիի կառավարութիւնը (1125—1126)։ Սորա յաջորդն է եղբայրը՝ Մահմուտ։ Այնուհետեւ քրդական իշխանութիւնը շարունակում է իր անհաստատ գոյութիւնը իբր Անիի տէր մինչև ԺԲ. դարու վերջերը**)։

ԺԱ-ԺԲ. դարերուն բաւականաչափ քուրդ իշխանական ցեղեր պէտք է որ գրաւած լինէին Հայաստանի կարեւոր բարձունքները, որոնցից սերում են «իշխանքն Զաքարէ և Իւանէ, որդիք Սարգսի, որդւոյ Վահրամայ, որդւոյ Զաքարի, որդւոյ Սարգսի՝ ի քրդազգէ հատուածեալ առ թագաւորն Զորոյ գետին, որ Բագրատունեաց ազգն է, հաւատացին ի Քրիստոս և պատուեցան»[1])։

Երեւում է, որ այս Քուրդ-Հայ ընտանիքի անդամները դեռ բաւական ժամանակ իրենց ազգային լեզուն ու սովորութիւնները փայփայեցին, մինչև որ բոլորովին ձուլուեցան ընդհանուր սովորութիւններով. որովհետեւ «Վախթանկ Սակոեանց-փեսայն Իւանէի, տէր Ներքին Խաչենոյ, (եթող) երկուս տղայս՝ զՀասան որ և ի գգուանաց Ջալալատաւլէ[2]) և զՋաքարէ՝ որ և Նասրատաւլէ[3])։

ԺԴ. դարուն թաթարաց միահեծան իշխանութեան օրով և Հուլաղուի յաջորդներու իշխանութեան տակ «Հայաստանի զանազան գաւառներու մէջ այլև այլ մեծ ու փոքր իշխանութիւններ կազմուեցան... իսկ հարաւային կողմը գրաւեցին քուրդ բէկերը՝ Սասունի գլխաւոր ամիրայի իշխանութեան տակ[4])։

Քրդական ուրիշ մի ցեղ անյայտ թուականներում հաստատուած ենք գտնում Ծաղկեայ լեռներու շուրջը և Կոգովիտ գաւառը, որոնք ընդհանուր անունով կոչւում են Սլիվի, կամ Սլիվանցիք՝ ըստ հայոց։ Այս ցեղին գլխաւոր ընտանիքին մայրաքաղաքն էր Պայազիտը, որի աւատապետները կոչւում էին Բահլուլ փաշայի տան ժառանգներ։

Սլիւանցոց մէկ ճիւղն է Սիփըքի կամ Սիփքցի աշիրէթը, որ գրաւած է Անթապ գաւառը (Հայոց Հանթէպը), հալածելով բնիկ հայ և եզդի ժողովուրդները դէպի հիւսիս։ Մեր օրով այս ցեղի ներկայացուցիչն էր Աբդ-Իւլ-Մէճիտը՝ հռչակուած իր վարած հրոսակային ոգորումներովը ռուս առաջապահ գնդերու դէմ և անգութ ու բարբարոսական կոտորածներովը Անթապի և Խլաթի գաւառներուն մէջ։

Մանազկերտի մէջ, իբրև երբեմնի տէրերը այդ բերդաքաղաքին, մինչև մեր օրերը գտնւում էին Բանոքի[5]) կամ Բանոքցի քրդերը, որոնցից սերած է ոմն Մոնլա-Հասանէ-Բանոքի անունով մի շէյխ, որուն անուան տրուած սուլթանական մի ֆէրմանի մէջ կոչուած է Էհլուլլահ (աստուածարան) և փոսթնիշին[6]) (փոսթի-մորթի վրայ նստող, ճգնազգեաց)։

2) Պուլանըքի մէջ գտնւում են եղել եզիդներ, որոնց ծերերուն կամ շէյխերուն անունով մի գիւղ տակաւին կոչւում է Փիրան. որովհետեւ փիր կամ քրդական այժմեայ հնչումով պիր[7]) նշանակում է ծեր, իսկ փիրվան՝ ծերեր կամ շէյխեր։

1) Միենոյն ֆէրմանով Լաթարի և իր արուարձան հինգ մեզրէ (ագարակ)-ներու բերքերուն տասանորդը յատկացուած էր յիշեալ շէյխին ու իր սերունդներուն՝ իրականութեան մէջ գոյութիւն չունեցող թէքիէին, իբր ապաստարան և ննդատու մի հաստատութիւն անցուդարձ անող աղքատների, դէրվիշների և այլն։

Ներքին Պուլանիքի Ապրի գիւղը՝ մեզ անյայտ ժամանակներէ ի վեր բնակւում են շէյխեր, որոնց հայերը յունական ծագում են վերագրում, թէև պէտք է վերապահութեամբ ընդունել այդ։ Մինչդեռ իրենց պատմածին նայելով իբր թէ Արաբիայէն

*) Տուրուբերանը հաւանօրէն նշանակում է Տաւրոսի, այսինքն Տաւրոս լեռների բերան. անշուշտ Տարօն բառն էլ Տաւրոս անունից է, ուստի և Տարօն ուղղագրութիւնից աւելի ճիշտ պիտի համարել Տարոնը։ Ծանօթ. Խմբ.

**) «Հայաստան, Ուղեւորութիւններ և Ուսումնասիրութիւններ» Հ. Ֆ. Բ. Լինչի, եր. 315—318, թարգմ. Լ. Լարենց, Կ. Պոլիս 1913։

[1]) Մեծին Վարդանայ Բարձրաբերդցւոյ Պատմ. Տիեզերական. եր. 183։

[2]) Այժմեայ քրդերէնով տաւ-լէ բառը նշանակում է արեւը իր վրայ (լինի), որ իմաստով նոյնանում մեր Արեւ-սատ անուան։ Յայտնի է որ եզիդները՝ որ քրդական մի հատուած են, արեւապաշտ են թերեւս հին Արեւորդիներու մի մնացորդը։

[3]) Պատմ. Տիեզերական Վ. Վ. Բ.

[4]) Պատմ. Հայոց Ստ. Պալասանեան եր. 586—87

[5]) Քրդական ազգանունները կազմւում են բառերուն ծայրը աւելացնելով ի գիրը, հետեւողութեամբ պարսկական կամ արաբական քերականութեան (խումինէճուտ- վերաբերական ածական) օր. Հասան, Հասանի, իսկ հայերէնը՝ Հասանանցի։ Իսմիմէնուպի յոգնակին կազմւում է ան յոգնականացուցիչ մասնիկով, օր. Ճարգի-Ճարգեան=Ճարգեաններ։

[6]) Մի կերպ այդ ֆիրմանի պատճէնը ձեռք բերել յաջողուած էր տողերս գրողին, բայց ափսոս, որ մեր փախուստի հետեւանքով անհետ կորաւ։

[7]) Պիր բառը արմատական պառաւ բառն է, բայց այժմ. ինչպէս հայերէնի՝ նոյնպէս քրդերէնի մէջ իգական սեռի ծերութեան յատկացուած է։

եղբայրներու՝ Մ ա մ և Կ ո ն անուններուն միացումէն։ Մամն ու Կոնը փերածուեր են Մամիկոնի և իրենց յետնորդները կոչուած են՝ Մամիկոնեաններ [1])։

Տուրուբերան գաղթած քրդական աշիրէթներէն ամենանշանաւորը ու երևելին եղած է Ալ ա ղ ի ն Բ է կ ի տունը, որոնք դեռ հարաւէն չեկած՝ կոչւում էին Բ լ ր է ս ի կամ Բ լ ր է ս ց ի ք։

Եօթն եղբայր են լինում, որոնք մտնում են Բիթլիսի աւատապետներու մօտ ծառայութեան. և նենգութեամբ դաւաճանելով իրենց տէրերը—«Խ ա ն ե ր»ը, սրախողխող են անում մինչև վերջին մանուկը և տէր դառնում Տարօն-Բիթլիսին։ Հետզհետէ առաջանալով բարձրանում են փաշայութեան։ Սրանց նախնի մեծերէն մէկուն անունը Ալէա-էդդին է լինում, որ աղաւաղուելով եղած է Ալաղին կամ Ալանդի, և իրենց տունը կամ գերդաստանը՝ Ալանդի կամ Ալաղին բէկի տուն։

Սրանց մէկ ճիւղն են Մուշի աշխարհին յայտնի Միրզաբէգի ոճրագործ որդիք՝ Հաջի Մուսա և եղբայրները՝ Գասըմ և Նաը բէկերը, որոնք բնակւում են Արևելեան Տարօնի կամ Ձխուրի գաւառը, իսկ իրենց ազգակիցները բռնած են Սև սարի բարձունքը Խոյթ և Բռնաշէն գաւառները։

Սև սարի վրայ զետեղուած են Բ ա լ ա ք ի կամ Բ ա լ ա ք ց ի քրդերը. մի տեսակ վայրենաբարոյ ժողովուրդ, որուն ծագումը նոյնպէս խորհրդաւոր է նայելով իրենց վարք ու բարքին, սովորութիւններուն և ընտանեկան լեզուին, որ մի տեսակ արաբական աղաւաղուած գաւառաբարբառ է. ծանօթ են նաև տեղական հայերէնին, համակիր են աւելի հայերուն քան Օսմանցոց։ Ականատեսները պատմում են, որ իրենց անսուտ երդումը ս. Աղբէրիկի անունով կը լինի։ Բալաքցի կիները խմորը կը խաչակնքեն. այս ու նման ուրիշ սովորութիւնները կարծեցնել տուած են շատերուն, որ բալաքցիք և մանաւանդ սորանց մէկ ճիւղը համարուող Բ ա ք ր ա ն ց ի ք սերում են հայ Բագրատունիներէն։

(Կը շարունակուի)

Սահակ Մովսէսեան

[1]) Մամիկոնեանք ոչ Պարսկաստանից են և ոչ էլ Չինաստանից, այլ Լազստանից, որ Խորենացու պատմութեան և աշխարհագրութեան մէջ կոչւած է Ճանիք. Մամիկոնեանց բնիկ կալուածքն էլ Տայոց աշխարհը, սահմանակից է Ճանիքին. իսկ Մամիկոն անունն է Մամ-ի Կոն։ Մամ, ինչպէս ուսուցչապետ Ադոնցը բացատրել է, վրացերէն մամա բառից է, որ նշանակում է Տէր, Տանուտէր. իսկ Կոնը Մամիկոնեանց յատուկ անունն է, որոնց հնագոյն ներկայացուցիչը պատմութեան մէջ յիշատակւած ըստ Սամուէլ Անեցու Կոնակ (=Կոն-ակ) է կոչւած։ Ապա ուրեմն Մամ-ի Կոն նշանակում է Տանուտէրենց Կոն, որ դարձել է Մամիկոն, Մամիկոնեան. ճիշտ ինչպէս այսօր էլ ժողովուրդն ասում է Ռէս-Խաչոյենք, Մելիք-Մուրադենց, Մելիք-Բաղդամենց այսինչը կամ տունը են։ Ծանօթ. Խմբ։

## Վ Ր Ի Պ Ա Կ

«Համբաւաբերի» № 29, սիւնեակ 907, տող 5 վերևից «726 փութի» փոխարէն սխալմամբ տպուած է «72»։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ



Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Պօղոսեանի Типографія „Прогрессъ", Лорисъ-Меликовск. 1. Дозволено военной цен